

ՓԵՏՐՎԱՐ

№ 2

1955 Թ.

# ՊԻՈՆԵՐ

# ՔԱՋԱՐԻ ԲԱՆԱԿ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Վ. ՄԻՆԱՍՅԱՆԻ

Ապրում ենք ազատ
Հայրենիքում մեր,
Միշտ ձեռք ենք բերում
Նոր գիտելիքներ,
Աճում ենք, ծաղկում
Եվ առնում հասակ...
Դու մեր անդորրն ես
Հսկում շարունակ,
Մեր խիզա՛խ բանակ:

Ամռան շոգերին
Ճամբար ենք գնում.
Կոփվում ենք չքնաղ
Բնության գրկում,
Վառում ենք խարույկ
Ջինջ աստղերի տակ...
Իսկ դու կանգնած ես
Մեր երկրին պահակ,
Մեր անհա՛ղթ բանակ:

Ձմռան ցրտերին
Խաղում ենք դրսում,
Նստում ենք սահնակ,
Դահուկով սահում:
Ձիլ երգն է հնչում
Փաթիլների տակ...
Մեր խաղն ես հսկում
Ամեն ժամանակ,
Մեր անհա՛ղթ բանակ:

Իջնում է խաղաղ
Երեկոն անուշ.
Թողած խաղ, ուսում
Քնում ենք մուշ-մուշ,
Մեր քունը հանգիստ,
Անմեղ, անարատ,
Դու ես պաշտպանում,
Մեր արթո՛ւն պահակ՝
Քաջասիրտ բանակ:

Միշտ կատարվում են
Բյուր իղձերը մեր,
Եվ մենք դառնում ենք
Խառատ, ինժեներ...
Մանկական մեր ջերմ
Սրտից անապակ,
Ողջո՛ւյն քեզ, ողջո՛ւյն,
Մեր Սովետական
Քաջարի՛ բանակ:



Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ




№ 2

ՓԵՏՐՎԱՐ

1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՀԻՍՈՒՆ ՏԱՐԻ

Հիսուն տարի է անցել այն օրվանից, երբ Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները գրոհի դուրս եկան ցարիզմի դեմ և լուրջ հարված հասցրին նրան:

Ցարական Ռուսաստանում բանվորներն ու գյուղացիները ապրում էին չափազանց ծանր վիճակում: Նրանք ատելությամբ էին լցված ցարի, կալվածատերերի և կապիտալիստների իշխանության դեմ: Բայց նրանց մի մասը դեռևս կարծում էր, թե ցարին խնդրելով կարելի է ազատություն ձեռք բերել: Այդպիսի կեղծ հույսեր էին տարածում ցարի պրովոկատորները: Եվ ահա 1905 թվականի հունվարի 9-ին (22-ին) Պետերբուրգի բանվորները իրենց կանանց և երեխաների հետ միասին գնացին դեպի Ձմեռային պալատ, որպեսզի իրենց կարիքների մասին պատմեն ցարին:

Բոլշևիկները բանվորներին ասում էին, որ աշխատավորների ազատագրումը պետք է ձեռք բերել ոչ թե ցարին խնդրելով, այլ զինված պայքարի միջոցով: Սակայն բանվորների հոսանքը դեպի Ձմեռային պալատ հնարավոր չեղավ կանգնեցնել: Ցարը անզեն մարդկանց դիմավորեց գնդակներով և սվիններով. սպանվեց և վիրավորվեց մի քանի հազար մարդ: Ձյունը ներկվեց բանվորների արյունով:

Ցարական կառավարությունը հույս ուներ արյունալի դատաստանով կանգնեցնել ռևոլյուցիոն շարժման աճը երկրում, բայց չհաջողվեց. կորավ բանվորների հավատը դեպի ցարը: Նրանք համոզվեցին, որ ազատություն կարելի է ստանալ ոչ թե խնդրելով, այլ պայքարելով:

Հունվարի 9-ը կոչվեց արյունոտ կիրակի: Կոմունիստական պարտիայի կոչով ոտքի ելան Ռուսաստանի բանվորները, զինվորները և գյուղացիները: Ամբողջ երկիրը բռնկվեց ռևոլյուցիոն պայքարով: Աշխատավորները պայքարի էին գնում «Կորչի ինքնակալությունը», «Մահ կամ ազատություն» լոզունգներով: Նրանք ցույց տվեցին հերոսության փայլուն օրինակներ:

Միայն տարի ու կես հետո ցարական կառավարությանը հաջողվեց ճնշել ռևոլյուցիան: Թեև ռևոլյուցիան պարտվեց, բայց նա հսկայական նշանակություն ունեցավ: Ռուսաստանի բանվորների օրինակով զենքը ձեռքերին պայքարի դուրս եկան Գերմանիայի, Թյուրքիայի, Իրանի, Չինաստանի և այլ երկրների ժողովուրդները:

Առաջին ռևոլյուցիայի փորձով, 1917 թվականի փետրվարին Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները տապալեցին ցարին, իսկ հոկտեմբերին խորտակեցին կալվածատերերի ու կապիտալիստների կառավարությունը և իշխանությունը վերցրին իրենց ձեռքը:

1905 թվականի ռևոլյուցիան, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, մի «գլխավոր փորձ» հանդիսացավ, առանց որի հնարավոր չէր լինի Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը:

Սովետական Միության բոլոր ժողովուրդները և ամբողջ առաջավոր մարդկությունը այս տարի նշեցին ռուսական առաջին ռևոլյուցիայի հիսուն տարին: Մեր Հայրենիքի ժողովուրդները հպարտությամբ գիտակցում են, որ անցած հիսուն տարվա ընթացքում Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարության շնորհիվ տնտեսության բոլոր բնագավառներում իրենք հասել են հսկայական հաջողությունների:



# ԸՆԿԵՐՆԵՐԸ

ԳՐ. ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Սեղանի առաջ, իրար դիմաց նստել են Լևոնն ու Տավինարը: Դասագրքերն ու տետրերը անկանոն ընկել են նրանց միջև, իսկ նրանք տարվել են թվաբանական մի խնդրով, որը երևի դժվար է լուծվում, քանի որ երկուսն էլ լուրջ են ու մտազբաղ: Նրանք տարբեր գործողություններ են անում, ջնջում, նորից սկսում, բայց խնդիրը գլուխ չի գալիս: Այնքան խորասուզվել են նրանք, որ չեն լսում փողոցով անցնող տրամվայի աղմուկը, հարևան սենյակում բարձր ձայնով երգող Տավինարի փոքր եղբոր՝ Աշոտի ձայնը:

Հանկարծ Լևոնը դադարեց գրելուց: Նա մի րոպե մտածեց, հետո նրա դեմքի լարվածությունը դանդաղորեն անցավ: Նա հաղթական ժպիտով գլուխը բարձրացրեց ու նայեց Տավինարին:

Աղջիկը շարունակում էր լարված աշխատել: Քրտնքի փոքրիկ կաթիլներ էին երևում նրա ճակատին, իսկ մազերի հյուսքերը ընկել էին սեղանի վրա: Լևոնը քիչ մնաց, որ ճչար. «Ես արդեն լուծել եմ, Տավի՛, ա՛յ, այսպես պետք է լինի», բայց նա զսպեց իրեն, հիշեց դասատուի խոսքերը իսկական ընկերության մասին, ու թողեց, որ Տավինարն ինքը լուծեր խնդիրը: Ուրիշ բան է, եթե նա չկարողանա, և ինքը ոչ թե արտագրել տա, այլ բացատրի, հասկացնի: Տավինարն իր ընկերն է: Եթե մեկը հարցնի իր լավագույն ընկերների անունները, Լևոնը կսկսի հաշվել՝ Արտաշես, Սուրիկ, Տավինար, Անահիտ և ուրիշ բազմաթիվ անուններ:

Նա գլուխը նորից խոնարհում է թղթերի վրա: Վերջին խնդիրն էլ լուծված է. նշանակում է, բոլոր դասերը պատրաստ են: Այ, քիչ հետո Տավինարն էլ կլուծի, և նրանք կսկսեն խոսել:

Չէ, լավ աղջիկ է Տավինարը, լավ ընկեր:

Նրանք առավոտները միասին են դպրոց գնում, միասին վերադառնում: Եվ վայ այն տղային, որ ճանապարհին ուզենա նեղացնել իր ընկերուհուն:

Մտքերով տարված, նա այլևս չի նայում իր ընկերուհուն, որն անհանգիստ շարժումներ է անում: Լևոնը մանրամասնությամբ հիշում է այդ տարվա առաջին օրը, ու զարմանում, որ ինքն այն ժամանակ չէր գնահատում Տավինարի ընկերությունը:

Նա հիշում է ամեն, ամեն ինչ...

***

Հակառակ իր ցանկության Լևոնն ուշացավ: Նա արթնացել էր առավոտ շուտ. բայց այնքան գործեր կային կարգի բերելու... Երբ արդեն պատրաստ էր դպրոց գնալու համար, մնացել էր միայն հինգ րոպե: Փողոցում Լևոնը վազեց առանց շուրջը նայելու և երբ դպրոց հասավ, բոլորն արդեն գնացել էին իրենց դասարանները:

Նա հարգանքով անցավ տասներորդ դասարանի կողքով, մի տեսակ նախանձով նայեց դասն առջև կանգնած տղաներին, որոնք նույնիսկ չնշմարեցին նրան. մինչդեռ Լևոնն ուզում էր անպայման երևալ: Սպասում էր, որ մեկն ու մեկը կանգնեցնի, ինչ-որ հարց տա: Բայց տասներորդցիները խիստ զբաղված էին երևում: Նույնիսկ իրենց հարևան Ռուբենը, որն անցյալ տարի միշտ կանգնեցնում էր նրան և խոսեցնում, հիմա կարծես թե չի էլ նշմարում:

Նա վեցերորդ «բ» դասարան հասավ, երբ դասընկերներն արդեն տեղավորվել էին, և իրենց դասարանի անցյալ տարվա ավագը դուռն էր ծածկում:

— Սպասիր, Արտաշե՛ս,— ձայն տվեց նա

դեռ հեռվից ու միջանցքով վազելով հասավ նրա մոտ,— չե՞ս տեսնում, որ գալիս եմ։

Արտաշեսը խիստ հայացքով նայեց նրան, չափեց ոտից-գլուխ, կարծես առաջին անգամն էր տեսնում։

— Ուսումնական տարին ուշացումով ես սկսում,— ասաց նա պաշտոնական ու հանդիմանական շեշտով,— և գուցե ես գալիս առանց պիոներական վզկապի։

Բնազդական շարժումով Լևոնը ձեռքը վզին տարավ, թեև անմիջապես հիշեց, որ շտապելուց արդուկված վզկապը մոռացել էր սեղանի վրա։

— Ես... մոռացել եմ. վաղն անպայման կկապեմ,— խոստովանեց նա հանցավորի ձայնով, թափով դասարան մտավ և ուղղվեց դեպի անցյալ տարվա իր տեղը։

— Լևո՛ն, գիտե՞ս ինչ, ես ցանկացա քեզ մոտ նստել. չէ՞ որ մենք հարևաններ ենք, նույն շենքում ենք ապրում...

— Ես քեզ մոտ նստողը չեմ. ես աղջկա մոտ չեմ նստի,— հանկարծ գոչեց Լևոնն ու իր գրքերի պայուսակը վերցնելով կանգնեց պատի տակ, լուսամուտի մոտ։

Ծովինարի դեմքից ժպիտը դանդաղորեն չքացավ։ Նա կարմրեց և հուզմունքից սկսեց արագ-արագ խաղալ իր վարսերի հետ։

Այդ պահին դուռը բացվեց և ներս մտավ դասղեկ ընկեր Մեսրոպյանը։ Նա կանգնեց, նայեց բոլորի հուզված դեմքերին, պատի տակ կանգնած Լևոնին և անմիջապես հասկացավ ամեն ինչ։

— Գևորգյա՛ն,— ասաց նա խոսքը Լևոնին ուղղելով,— նստիր քո տեղը։



Հանկարծ Լևոնը դադարեց գրելուց։

Լևոնը հանկարծ կանգ առավ։ Նստարանների վրա աղջիկներ էին նստել։ Նրանք հետաքրքրությամբ նայում էին իրեն։ Նա զարմացած նայեց նրանց։

— Վեցերորդ «բ» դասարանի աշակերտուհիներ են,— ասաց Արտաշեսը։

— Իսկ ի՞նչ է, դժգո՞հ ես,— դիմեց Լևոնին մի աղջիկ։

Լևոնը նայեց ձայնի ուղղությամբ և ճանաչեց Ռուբենի քրոջը՝ Ծովինարին։ Նա դեմքը շուռ տվեց. «այդ էր պակաս, որ ես միճեմ աղջկա հետ»։ Բայց աղջիկը շարունակեց մտերիմ տոնով.

Եվ մատով ցույց տվեց Ծովինարի կողքի ազատ տեղը։

Լևոնն աղերսական հայացքով նայեց դասատուի դեմքին։

— Նստիր քո տեղը,— կրկնեց ընկեր Մեսրոպյանը հանգիստ, բայց առարկություն չընդունող տոնով։

Լևոնը ենթարկվեց։

***

Դասերից հետո, կարծես ոչինչ պատահած չլիներ, Ծովինարը մոտեցավ Լևոնին։

— Տուն չե՞ս գալիս՝ միասին գնանք,— առաջարկեց նա տղային։

Լևոնը դեմքը շուռ տվեց։

— Ես մնում եմ գպրոցում,— ասաց նա արհամարհական շեշտով,— ես աղջկա հետ չեմ գնա։



Այդ պահին դուռը բացվեց...

— Բայց չէ՞ որ մենք միասին ենք սովորում և ապրում ենք նույն շենքում,— պնդեց աղջիկը։

— Հետո՞ ինչ. ես ընկերներիս հետ ֆուտբոլ պիտի խաղամ և հետո նրանց հետ էլ պիտի գնամ։

Աղջիկը մի րոպե լուռ մնաց, հետո նյարդային շարժումով հյուսքերը գցեց ուսերի վրա։

— Դու գիտես. իսկ ես կարծում էի, որ դու լավ ընկեր կլինես։ Եղբայրս՝ Ռուբենը միշտ ասում էր, որ դու լավ տղա ես. ես այսօր նրան կասեմ, որ սխալվել է, որ դու բոլորովին էլ լավը չես։

Նա արագ շարժումով վերցրեց պայուսակը և ուղղվեց դեպի դպրոցի դուռը։ Լևոնը չուզեց նայել, բայց վերջին րոպեին շուռ եկավ և տեսավ, թե ինչպես Ծովինարը վազում էր փողոցով մեկ։



Լևոնը հայացքը բարձրացրեց Ծովինարի վրա, վախեցած, որ աղջիկն այլևս չի խոսի իր հետ և ինքը չի ունենա այդպիսի լավ ընկերուհի։ Բայց Ծովինարի սև մեծ աչքերը ժպտում էին ուրախությունից։

— Ես արդեն լուծել եմ, Լևոն,— ասաց նա. դժվար էր, գիտես... կարծեցի, թե ես չեմ կարողանա։ Իսկ դու լուծե՞լ ես։

— Այո։

Աղջիկը տեղից վեր թռավ ու մոտեցավ տղային։ Նրանք պատասխանները համեմատեցին իրար հետ։ Ճիշտ էր։ Նույն ձևով էլ լուծել էին։

— Եթե չկարողանայի՝ կօգնեի՞ր։

— Իհարկե...

Նրանք նայեցին իրար և ժպտացին։ Լևոնի դեմքը հանկարծ լրջացավ։

— Դու գիտե՞ս, ես ինչի մասին էի մտածում։

— Ինչի՞...

— Ես հիշեցի այս տարվա առաջին օրը... թե ինչպես չէի ուզում քեզ մոտ նստել, քեզ հետ տուն գնալ։ Դու վիրավորվեցիր ինձանից, չէ՞։

Ծովինարը նորից ժպտաց.

— Դե՜, դու կոպիտ էիր, ես ուզեցի եղբորս ասել, բայց հետո չասացի։

Աղջիկը մտածեց։ Նրա մտքով արագ անցան մի քանի դեպքեր, բայց նա չպատմեց, միայն ժպտաց.

— Հիշո՞ւմ ես, մեր դասարանը խաղում էր վեցերորդ «գ»-ի հետ, երբ փողոցային տղաներն ուզեցին խաղը խանգարել։

— Հիշում եմ,— ասաց Լևոնը։

— Նրանցից մեկը իմ մազերից քաշեց, իսկ դու և Արտաշեսը անմիջապես պաշտպանեցիք ինձ։

— Այո։ Դրանից առաջ էլ, խաղերի ժամանակ դու միշտ ինձ քաջալերում էիր։

— Հա, դրանից առաջ դու մի անգամ ինձ բացատրեցիր մի խնդիր, որ ես չէի կարողանում լուծել։

— Իսկ դրանից առաջ...

Այդպես էլ նրանք չգտան, թե ով էր հաշտեցման առաջին քայլը կատարել, և թե որ օրվանից էին նրանք սկսել ընկերներ դառնալ։ Նրանք նորից ծիծաղեցին՝ բարձր, երջանիկ ծիծաղով։

Մայրիկը դուռը բացեց։

— Ավարտե՞լ եք, երեխանե՛ր,— ասաց նա ժպտալով և երկուսին միասին գրկելով,— դե, եկեք, տաք թեյը ձեզ է սպասում. միայն շատ մի՛ աղմկեք։ Ռուբենը դեռ չի վերջացրել։

Ընկերները վեր կացան։

Մյուս սենյակի դռան արանքից նրանք տեսան Ռուբենի լուրջ դեմքը, որ դեռ շարունակում էր պարապել։ Նրանք իրար նայեցին և նախանձեցին։

— Տասներորդ դասարան... ո՞վ գիտե, ինչքան դժվար են դասերը,— ասաց Լևոնը։

— Չորս տարի հետո մենք էլ տասներորդում կլինենք,— շշնջաց Ծովինարը և երջանիկ նայեց Լևոնին։

— Իհարկե...

— Դե՛, երեխանե՛ր, ուշանում եք,— լսվեց նորից Ծովինարի մոր ձայնը և նրանք ձեռք-ձեռքի տված շտապեցին սեղանատուն։

Սենյակում հաճելի աղմուկով վառվում էր վառարանը, իսկ լուսամուտի վրա սառնամանիքը բազմաթիվ ու հետաքրքիր նկարներ էր նկարել։




Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Նկարեցի պարտեզ,
Բայց դուրս եկավ անտառ...
Խշշում էին կարծես
Կաղնիները դալար:
Նկարեցի հետո
Կածան ոլոր-մոլոր,
Չէ՞ որ ունեն կածան
Անտառները բոլոր...
Երկու սիրուն մանկիկ,
Փոքրիկ քույր ու եղբայր
Գնում էին սնկի
Նեղ կածանով երկար:
Ներկը թափվեց թղթին
Ու կերպարանք առավ,
Նմանվեց գորշ գայլի,
Սարսափելի դառավ...
Քույր ու եղբորը նա
Այնպես մոտ է կանգնած,
Վա՜յ, կսկսի ոռնալ,
Վրա կտա հանկարծ:
— Փախե՛ք, երեխանե՛ր,—
Իմ քույրիկը ճչաց.—
Ձեզ մի բերան կանի
Ագահ գայլը քաղցած:—
Ո՞ւր փախչեին նրանք.
Հնար չկար արդեն.
Ի՞նչ անեին մենակ
Երկու մանուկ անզեն:
Բայց ես նրանց դիմաց
Նկարեցի մի ծառ,
Գայլի աչքից մեկ էլ
Կորան քույր ու եղբայր:
Դե, փոքրիկնե՛ր, հանգիստ
Սունկ հավաքեք հիմա,
Գայլը ձեզ չի գտնի,
Դժգոհ կհեռանա:
Զուր մի՛ ոռնա, չա՛ր գայլ,
Զամբյուղները լցուն
Փոքրիկ քույր ու եղբայր
Ուրախ գնացին տուն:



# ՈՒՖԱ

Վ. ԼԵԲԵԴԵՎ

Նկ. Ռ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Կյանքում կան այնպիսի տարեթվեր, որոնք մարդիկ երբեք չեն մոռանում: Ձեզանից ո՞վ չի հիշում 1918 թվականի փետրվարի քսաներեքը, երբ Պսկովի ու Նարվայի մոտ տեղի ունեցած ճակատամարտում գերմանական հորդաները գլխովին ջախջախվեցին: Այդ օրը հայտարարվեց Կարմիր Բանակի ծննդյան օր:

Ամեն տարի փետրվարի քսաներեքին մեր Մեծ Հայրենիքը նշում է իր սիրելի բանակի փառապանծ տոնը:

Ամբողջ աշխարհի առաջավոր մարդիկ երբեք չեն կարող մոռանալ Կարմիր Բանակը կազմակերպողներից ու ղեկավարներից մեկին՝ Մ. Վ. Ֆրունզեին, որն իր լեգենդար կյանքը նվիրեց մեր բանակի հզորացման գործին:

*Մարտեր էին մղվում Ուֆա քաղաքի արվարձանները գրավելու համար:*

*Ֆրունզեն, բլրի վրա կանգնած, դիտում էր մարտերի ընթացքը: Նա հեռադիտակով տեսնում էր, թե ինչպես կոլչակյանները նեղում էին կարմիրբանակայիններին:*

*— Վասիլի՛ Իվանովիչ,— հարցրեց Ֆրունզեն իր լավագույն օգնականին՝ Չապաևին,— Իվանովցիներին օգնություն ուղարկվա՞ծ է:*

*— Արդեն հրաման տրված է, բայց մինչև զորքերը հասնեն՝ երկու-երեք ժամ կտևի,— պատասխանեց Չապաևը:*

*Այժմ գրոհում էին Ֆրունզեի հին բարեկամները՝ Իվանով քաղաքի ջուլհակները: Նրանց շարքում կռվում էին Տուլկի անտառում Ֆրունզեի հետ կողք-կողքի կռվող զինվորները, Պրեսնյայում մարտնչողները, գրոհով «Մետրոպոլը» նվաճողները: Այս գնդի ամեն մի մարտիկի Ֆրունզեն անձամբ ճանաչում էր:*

*Հանկարծ Ֆրունզեն ձեռքից բաց թողեց հեռադիտակն ու նորից մոտեցրեց աչքերին:*

*— Ճանապարհի վրա ինչ-որ բան է փայլում,— ասաց նա անհանգստացած,— հավանաբար սպիտակներն իրենց զորքերն են կենտրոնացնում:*

*Ֆրունզեն չսխալվեց: Սպիտակներն իրենց դիրքերն էին ամրացնում...*

*Կոլչակյան զինվորներն անցնում էին խիտ շարքերով, իսկ նրանց հետևից՝ սպաները, ատրճանակները ձեռքերին: Նրանք զինվորներին ուժով մարտի էին քշում, սպանելով նրան, ով փորձում էր ետ մնալ:*

*Ֆրունզեի հին ընկերները՝ ջուլհակները չհանձնվեցին, թեև ուժերն անհավասար էին: Սպիտակների երեք կամ հինգ զինվոր կռվում էին մեկի դեմ: Մերոնց ուժերը մի քիչ նվազեցին: Փամփուշտներն արդեն վերջացել էին:*

*— Մի՞թե մինչև օգնությունը չեն դիմանա,— շշնջաց Ֆրունզեն:*

*Սպիտակների կրակն ավելի ուժեղանում*



Ուֆա տանող ճանապարհը ազատ էր...

էր։ Թվում էր, թե այլևս ոչինչ չի կարելի անել։ Մի րոպե, և կարմիրբանակայինները կնահանջեին։ Ֆրունզեի կողքին շառաչով պայթեց արկը։ Ձին խրխնջաց ու ետ ցատկեց։ Բայց Ֆրունզեն կարծես թե ոչինչ չէր նկատում։ Նա առաջվա պես նայում էր հեռադիտակով։

Հանկարծ նա խթանեց ձիուն և գլխիվայր նետվեց առաջ՝ կրակի ամենախիտ տեղը։

— Միխայի՛լ Վասիլևիչ, ո՞ւր եք գնում, ո՞ւր...,— բղավեց Զապաևը։

Ֆրունզեն նույնիսկ ետ չնայեց։ Նա սլանում էր գնդակների տարափի տակ։ Այդ ժամանակ Զապաևը խթանեց ձիուն և Ֆրունզեի հետքով սլացավ։

Հենց այդ ժամանակ կարմիրբանակայինները սկսեցին նահանջել։ Հանկարծ նրանք իրենց կողքին տեսան հեծյալների մի խումբ ու իրենց հրամանատարին՝ Ֆրունզեին։

Ֆրունզեն ձեռքը բարձրացնելով, գոչեց.

— Բարեկամնե՛ր, մենք իրավունք չունենք նահանջելու։ Իմ հետևից առա՜ջ...— ու ձիուց ցատկելով առաջին պատահած զինվորից խլեց հրացանը և վազեց դեպի սպիտակները։ Ֆրունզեն գիտեր, որ զինվորները կգան իր հետևից, ուր որ կամենա, թեկուզ դեպի մահ։ Նա համոզված էր։

Փամփուշտներն արդեն վերջացել էին։ Կարմիրբանակայինները, սվինները պատրաստ պահած, իրենց հրամանատարի հետևից շարժվեցին առաջ։

— Առա՛ջ, առա՛ջ... ընկերնե՛ր,— ոգևորում էր Ֆրունզեն իր հավատարիմ մարտիկներին։

Սպիտակները մոլորվեցին։ Նրանք, համոզված էին, որ կհաղթեն. դրա համար էլ այդպիսի ճնշում բոլորովին չէին սպասում։ Նրանց շարքերը ցիր ու ցան եղան։ Այժմ արդեն ոչ թե կարմիրները, այլ սպիտակներն սկսեցին նահանջել։ Ֆրունզեն տեսնելով, որ մարտի ամենավտանգավոր պահն անցավ, նորից նստեց ձին ու սլացավ թշնամու ամրությունների հետևը։

Մերոնց շուտով օգնություն հասավ։ Ճակատամարտը շահված էր։ Սպիտակները խուճապահար փախան։ Ուֆա տանող ճանապարհը ազատ էր...

Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ



# Վարպետ ՊԵՏԻՆ

Մայրը կանչեց.— Ա՛յ Պետի,
Տար աթոռն այս՝ վարպետին,
Կոտրած ոտքը թող պոկի,
Ամուր ու լավ նորոգի։
Խոժոռ նայեց մեր Պետին,
— Ինչո՞ւ տանենք վարպետին,
Չէ՞ որ վաղուց դպրոցում
«Հմուտ ձեռքեր» ենք գործում։
Պատրաստում ենք ամեն բան,
Լինի աթոռ, թե սեղան։
Շատ դժվար է պատվերը,
Բայց սովոր է իմ ձեռքը.
Այնպես սարքեմ, նորոգեմ՝
Նոր աթոռից չջոկեն։—
Ասաց, մտավ փայտանոց,
Բերեց ուրագ ու սղոց,
Փայտ, մուրճ, ածցան ու մեխեր,
Եվ սկսեց աշխատել։
Շուտ վերջացրեց նա գործը,
Մի կողմ նետեց գոգնոցը,
Աթոռն առած տուն դարձավ,
Մայրը տեսավ՝ հիացավ։
— Ապրե՛ս, ապրե՛ս, իմ Պետի,
Ինչու դիմել վարպետին,
Դու վարպետ ես իսկական,
Մեզ բոլորիս պետքական։

Է. ԱՎԱԳՅԱՆ

# ԶԱՄՇՐԱՂԻ ՔԱՐԸ

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Նկ. Վ. ԹԻՎԱՆՅԱՆԻ

Լեռների փեշերից դեպի վեր էին ձգվում աղջամուղջի խիտ ստվերները։ Թանձրանում և մթնում էր լանջերի կանաչը։ Օրը մոտենում էր իր վախճանին։

Ժեռ քարերի միջով ոլորապտույտ ժապավենի նման, դեպի ձորն էր իջնում գյուղական փոշոտ ու քարքարոտ արահետը։ Երբ արևի վերջին ճառագայթները քաշվեցին Արագածի կատարից, արահետի վրա մարդկային երկու ստվեր երևացին։ Մարդիկ շտապում էին։ Նրանցից մեկը տարիքն առած կին էր, իսկ մյուսը՝ տասներեքամյա մի գանդրահեր աղջիկ։ Աղջիկը քայլում էր կնոջ հետևից և երկյուղով նայում մթնող ձորերին։ Նրա աչքին ծառերն ու քարերն սկսեցին կորցնել իրենց



Աղջիկը... Երկյուղով նայում էր մթնող ձորերին։

բնական տեսքը. նրանց մռայլ ուրվագծերը հեքիաթային խորհրդավոր հրեշների էին նմանվում։ Աղջիկը վախ զգաց և ետ չընկնելու համար արագացրեց քայլերը։

— Քիչ մնաց, Ալվա՛րդ ջան, հիմա կհասնենք,— շշնջում էր ծեր կինը,— ա՛յ, էն բլրի հետևն է, մեռնեմ նրա զորությանը։

Երբ նրանք մոտենում էին բլրին, լուսինը բարձրացավ, և նրա լույսի տակ երևացին նոր «ուխտավորներ»։ Երկու ծերունի թևանցուկ արած տանում էին մի ծանր հիվանդի։ Քիչ հետո երևաց նաև «Զամշրաղի քարը»։ Դա սովորական մի քար էր, բայց փոքր ինչ տարօրինակ. բարձր էր և, կարծես, փեշեր ուներ։ Քարի մեջտեղը մի անցք կար, իսկ կողքին՝ մամռապատ սալահատակ, որի վրա վառած մոմերի մնացորդներ կային։ Ծանր հիվանդին մոտեցրին «Զամշրաղի քարին»։ Հիվանդը գրկեց քարը և ջերմեռանդությամբ սկսեց համբուրել։

Լուսինը թեքվեց լեռների վրա։ Հեռվում որոտում էր Քասախ գետը։ Ուռիներն ու թխկիները մռայլ ստվերների նման լուծվեցին գիշերային խավարի մեջ։ Երբ հիվանդին բարձրացրին, նրա գունատ դեմքը սառել ու քարացել էր։

Զանան տատը երկյուղածությամբ մոտեցավ քարին, բռնեց թոռան ձեռքը, և երկուսն էլ ծնկի իջան։

— Համբուրիր, Ալվա՛րդ ջան, համբուրիր,—շշնջում էր տատը,— ինչ ցանկություն որ ունես, Զամշրաղը կկատարի. մեծ է նրա զորությունը։

Ալվարդը գիշերային ցրտից դողալով, գլուխը կախեց և շրթունքները նորից հպեց սևացած քարին։ Տատն ինչ-որ աղոթք էր մրմնջում և ասում Ալվարդին.

— Համբուրիր, բալա՛ս, համբուրիր...

Կես գիշեր էր։ Նույն ոլորապտույտ արահետով տուն էին վերադառնում «ուխտավոր-

ները։ Ալվարդն այնպես էր դողում, որ ատամ-ատամի չէր կպչում։

— Մրսեցիր, քոռանամ ես,— վշտանում էր Ջանան տատը,— հիմա կհասնենք, մի բաժակ թեյ կխմես՝ կտաքանաս։

Ալվարդը չէր խոսում։ Նրա ոտքերը թուլացել և հազիվ էին ենթարկվում իրեն։



Տարեվերջի քննություններին երկու օր էր մնացել, բայց Ալվարդը հիվանդ պառկած էր։ Գնալով նրա վիճակը ավելի էր վատանում։ Դեմքը կապկպած էր. երևում էին միայն խամրած աչքերն ու դեղնավուն ճակատը։ Բերանի խոռոչում, շրթունքներին ու այտերին վերքեր էին առաջացել։ Բարձր ջերմությունն ու վերքերի կսկիծը տանջում էին աղջկան։ Կոկորդի ուռուցքը դրեթե փակել էր շնչափողը, և նա հազիվ էր կարողանում շնչել։

— Մի՞թե Ալվարդիս փրկություն չկա,— հիվանդի կողքին նստած հառաչում էր մայրը։

Հանկարծ նա ոտքի կանգնեց և վճռական քայլերով գնաց դեպի դուռը։ Ջանան տատը նկատեց այդ։

— Ո՞ւր։

— Գնում եմ բժիշկ բերեմ։

— Ետ դարձիր,— շշնջաց նա,— իմ եփած մահլամով կառողջացնեմ Ալվարդիս։ Բժիշկը զուր բան է։ Երեխայի ճակատին ինչ-որ գրված է, այն էլ կլինի։ Բժիշկն ի՞նչ կարող է անել։

Մի պահ լռություն տիրեց։ Սենյակի անդորրության մեջ միայն լսվում էր հիվանդի թույլ և ընդհատվող շնչառությունը։

Ջանան տատի աչքերը թաց էին։ Քիչ հետո նա բերեց զանազան տեսակի բույսեր, դանակով մանրեց, կաթ ու յուղ լցրեց վրան և թիթեղյա ամանը դրեց կրակին։ Երբ մահլամը պատրաստ էր, նա հիվանդի վերքերին նոր «դեղ» դրեց, ապա մի սրբապատկեր կախեց հիվանդի գլխավերևն ու խաչակնքելով երեսը, նստեց մահճակալի մոտ։ Հետո գլխից արձակեց գլխաշորը, աղոթք մրմնջաց և աղոթած գլխաշորով ծածկեց հիվանդի գլուխը։



Դասերից հետո ջոկատավար Վահրամն ու Զվարթը շտապեցին Ալվարդի մոտ։ Նրանք սովոր էին լեռնային ուրախ վտակի ափին կանգնած քարաշեն տան առաջ զիլ ձայնով կանչել «Ալվարդ... է՜յ, Ալվարդ...», բայց այս անգամ նրանք չկանչեցին, լուռ ու մունջ անցան բակ և մոտեցան կիսաբաց դռանը։ Ալվարդի մոր հեկեկոցի ձայնը սարսափեցրեց նրանց, և նրանք չզգացին, թե ինչպես ներս մտան։

— Վատ է զգում հա՞... ի՞նչ են ասում բժիշկները,— հարցրեց Վահրամը շփոթված։

— Բժիշկ չի եկել,— պատասխանեց Ալվարդի մայրը։

— Ինչպե՞ս թե, ինչո՞ւ։

— Տատն է բուժում. նա դեմ է բժիշկ կանչելուն։

— Ահա թե ի՜նչ,— հազիվ լսելի ձայնով շշնջաց Վահրամը և դուրս վազեց։

Դռան մոտ նա հանդիպեց Ալվարդի դասընկերուհիներին՝ Քնարիկին, Անահիտին և դասղեկ ընկեր Վիրաբյանին, որոնք գալիս էին Ալվարդի մոտ։ Քիչ հետո Վահրամի հետ ներս մտավ բժիշկ Գեղամյանը։

Տեսնելով հիվանդի վիճակը, բժիշկն անմիջապես քանդեց վիրակապերն ու սև գլխաշորի հետ դեն շպրտեց։ Ապա հիվանդի գլուխը թեքելով նա վիրադանակով պատռեց կոկորդի ուռուցքը։

Ալվարդը փրկված էր։

Ջանան տատը տեղում քարացել էր. կարծես արձան լիներ. ոչ մի բառ չէր արտասանում։

Ալվարդին տեղափոխեցին հիվանդանոց։



Օրեր անցան։ Ալվարդն առողջացավ։ Նրան դուրս գրեցին հիվանդանոցից, բայց տատի «դեղերն» արդեն իրենց գործը տեսել էին։ Ձախ այտի վրա և ներքևի շրթունքի մոտ սպիներ էին մնացել։

Մյուս օրն Ալվարդը դպրոց գնաց։ Նրա դասընկերներն այդ օրը հանձնում էին նախավերջին քննությունը։ Ալվարդի քննությունները հետաձգել էին աշնանը։ Դասըն-

կերները շրջապատեցին նրան։ Նրանք բժշկից իմացել էին, որ Ալվարդի վերքերը վարակի հետևանք են եղել. բայց նրանք չէին կարող հասկանալ, թե նա որտեղ կարող էր վարակիչ հիվանդություն ստանալ. դպրոցո՞ւմ, տա՞նը, թե՞ մի այլ վայրում։ Ահա թե ինչու այդ հարցը ավելի շատ էր հետաքրքրում դասընկերներին։

— Կպատմեմ, ամեն ինչ կպատմեմ,— ամոթից աչքերը գետին հառելով, ասաց Ալվարդը։

— Հիշում եք այն օրը, երբ ես դասի չեկա,— շարունակեց նա.— դրա նախորդ երեկոյան տանը ես անընդհատ խոսում էի քննությունների մասին, տատս թե. «Շատ մի



Հիվանդը... ջերմեռանդությամբ սկսեց համբուրել:

չարչարվիր. հիմա ես կիմանամ՝ կփոխադրվես, թե՞ ոչ»։ Այս ասելով, նա իր գոգնոցի գրպանից մի քանի հատ զարու հատիկ հանեց և սկսեց գուշակել։ «Չէ, ճանապարհը փակ է,— վերջապես ասաց տատս,— դու այս տարի չես փոխադրվի։ Ուխտ պիտի գնանք, նա քեզ կօգնի»։

Ես փորձեցի առարկել. «Չեմ գա, ասացի, եթե ես հարցերի պատասխանը չգիտենամ, գարին ու սուրբը չեն կարող փոխադրել»։ Բայց բան դուրս չեկավ։ Ճիշտն ասած՝ մի քիչ էլ ուզում էի գնալ. տատիս գարիներին ես այն ժամանակ կարծես թե հավատում էի։ Մի անգամ ես դաս էի պատրաստում. տատս գարի գցեց, որ իմանա, թե ինչ պիտի ստանամ. էլի ճանապարհը փակ էր։ Ես էլ տատիս գարիներին հավատացի ու դասս չսովորեցի։ Հիշում եք, մի անգամ ես հայոց լեզվից «2» ստացա։ Դե, իհարկե, հիմա գիտեմ, որ եթե տատին չլսեի, գարիներին չհավատայի, դասս կսովորեի և «2» չէի ստանա...

Առավոտյան ես դասի չեկա և տատիս հետ գնացի «Զամչրադի քարը»։ Իհարկե, եթե մայրս տանը լիներ, գուցե չթողներ։

— Ամոթ քեզ, Ալվա՛րդ։

— Ես առաջարկում եմ Ալվարդի հարցը քննել...

Բոլորը լռեցին։

— Ոչ, Յողի՛կ, դու սխալվում ես,— առաջինը լռությունն ընդհատեց Վահրամը,— նա արդեն զգում է իր սխալը։

Վահրամը տխուր նայեց Ալվարդի երեսի սպիներին։

— Պատմիր, պատմիր, հետո՞...

— Երբ տեղ հասանք,— լացակումած շարունակեց Ալվարդը,— տատս ստիպեց, որ չոքեմ և համբուրեմ քարը. ես էլ համբուրեցի։ Ինձանից առաջ այդ քարը համբուրեց մի ծանր հիվանդ։ Ես հետո տեսա, որ նրա երեսը ամբողջովին վերքերով էր ծածկված...

***

Նոր ուսումնական տարում Ալվարդը նորից իր դասընկերների հետ էր։ Նրանց և ուսուցիչների օգնությամբ նա հանձնել էր քննությունները և փոխադրվել 6-րդ դասարան։ Դասարանում բոլորն արդեն գիտեին Ալվարդի հիվանդության պատմությունը։

Ջոկատի խորհրդի ընտրությունների ժամանակ, պիոներները նորից հիշեցին Ալվարդի հիվանդությունը, խոսեցին այդ մասին։

— Գուցե մեր ջոկատում կան պիոներներ, որոնք հավատո՞ւմ են կրոնին։ Ես առաջարկում եմ ջոկատի պատի թերթի առաջին համարը նվիրել «Գիտությունը և կրոնը» թեմային։

Վահրամի առաջարկն ընդունվեց միաձայն։

— Իսկ ես,— ասաց Ալվարդը,— պատի թերթին մի հոդված կգրեմ «Զամզրաղի քարը» վերնագրով։

Երկու օր հետո, երբ Ալվարդը տանը նըստած գրում էր այդ հոդվածը, Զանան տատը նորից իր դարիներով էր զբաղված։

— Տեսար, Ալվա՛րդ ջան, «Զամզրաղի քարը» չլիներ, դու չէիր փոխադրվի,— միջամտեց նա։

Ալվարդը գլուխը բարձրացրեց, նայեց



—Մի՞թե Ալվարդիս փրկություն չկա:

նրան, հետո մեքենայաբար ձեռքը տարավ դեպի դեմքի վրայի սպիները, ապա ժպտաց տատի միամտության վրա և շարունակեց գրել...

## ՈՎ ՇՏԱՊՈՒՄ Է...

Ս. ԽԱՐԱՋՅԱՆ

Նստած սենյակի խաղաղ անկյունում
Մեր փոքրիկ Կարոն սահնակ է շինում,
Նահապետ քեռու ուրագը ձեռքին
Տախտակ է տաշում ու շարում կողքին:
Սահնակներն առած Գուրգենն ու Նորան
Դրսում խաղում ու կանչում են նրան,
Կարոն էլ այնքան, այնքան շտապում,
Որ մուրճով հանկարծ մատին է խփում:
Մատին է խփում, բարձրաձայն լալիս,
Իսկ քեռին լսում մոտիկ է գալիս:
— Հը՛, վարպե՛տ Կարո, մատի՞դ խփեցիր,
Վարպետ ես դարձել, բայց լավ իմացիր,
Ով շտապում է՝ այդպես է լինում,
Հանգիստ վարպետը արագ է բանում:



# ՀԱՐԱԶԱՏ ՔԱՂԱՔԻ ՄԱՍԻՆ

Ա. ՏՈՎԱԿ

Լուս՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Երեկոյան, երբ նոր բնակարանը կահավորելուց հետո ընտանիքը պատրաստվում էր թեյելու, միջանցքից լսվեցին ինչ-որ անհասկանալի խոսակցության ձայներ։

— Այս ի՞նչ է, մեզ մոտ հյուրե՞ր են գալիս,— ասաց Էդիկի մայրը։

— Բայց ի՞նչ լեզվով են խոսում, ես չեմ հասկանում,— հարցրեց Էդիկը։

Եվ մինչև որևէ մեկը կպատասխաներ նրան, դուռը բացվեց, և մի ժպտերես ու սևաչյա աղջիկ ներողություն խնդրելուց հետո, ասաց.

— Հյուրեր կընդունե՞ք...

— Դե, իհարկե, ինչպես չէ... խնդրե՛մ, խնդրե՛մ, ներս համեցեք,— ոտքի կանգնելով պատասխանեց Էդիկի հայրը։

Ներս մտան տասնհինգ հոգի։ Էդիկը իսկույն ճանաչեց նրանց։ Չինացիներին նա հանդիպել էր մի քանի ժամ առաջ, երբ դպրոցից տուն էր վերադառնում։



Ի. Վ. Ստալինի անվան պողոտան։

— Ընկե՛ր Սամսոն,— հին ծանոթի նման շարունակեց չինացի աղջիկը, որը հիանալի կերպով տիրապետում էր ռուսերենին,— բանից դուրս եկավ, որ մենք հարևաններ ենք ոչ միայն կոմբինատում, այլև այստեղ՝ բնակելի շենքում։ Մեզ բոլորիս տեղավորել են այս Նորակառույց շենքի երրորդ հարկում։

— Իսկապե՞ս... ա՛յ քեզ հրաշալի բա՛ն,— ուրախացած բացականչեցին Էդիկի ծնողները։

— Ընկե՛ր Սամսոն,— նորից խոսեց չինուհին,— մեր ընկերները ձեզանից խնդրում են պատմել ձե՞ր հարազատ քաղաքի՝ Կիրովականի մասին։

— Ես ինքս բնիկ Կիրովականցի եմ և մեր քաղաքը շատ լավ գիտեմ։— Դե, ուրեմն, սկսենք։

Սկսվեց մի հետաքրքիր զրույց։

— Կիրովականն իր մեծությամբ Հայաստանի երրորդ քաղաքն է։ Նախասովետական շրջանում ունեցած մի քանի դարբնոցների և եզներ պայտող արհեստանոցների փոխարեն այժմ քաղաքն ունի ավելի քան 25 գործարան, ֆաբրիկա և արտադրական այլ ձեռնարկություններ։ Դրանցից ամենախոշորը Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատն է, որը բարձրորակ պարարտանյութեր է արտադրում մեր գյուղատնտեսության համար. արտադրում է նաև կարբիդ։

— Շատ ճիշտ է, մեր դասատուն էլ այդպես ասաց,— հանկարծ բացականչեց Էդիկը։

— Ինչպես թե՝ ճիշտ է, մի՞թե հայրիկը սխալ բաներ կասի,— դիտողություն արեց Էդիկի քույրը՝ Լիզան։

— Ոչ, ես այդ չէի ուզում ասել։ Այսօր մեր դասարանում հետաքրքիր դեպք պատահեց։ Երբ մեր քիմիայի դասատուն աշակերտներից մեկին հարցրեց, թե ի՞նչ են արտադրում քիմիական կոմբինատում, նա պատասխանեց. «Եթե կոմբինատը քիմիական է կոչվում, կնշանակի այնտեղ արտադրում են քիմիա»։

Բոլորը ծիծաղեցին։ Երբ չինացի աղջիկը պատասխանը թարգմանեց իր ընկերներին, նր-

բանք նույնպես սրանց ծիծաղեցին։ Իսկ հայրիկն ասաց.

— Շարունակենք մեր զրույցը։ Երկրի բամբակագործական շրջանների համար ցիանամիդի փոշի արտադրելու տարեկան առաջադրանքը մեր քիմիագործներն այս տարի կատարեցին ժամկետից երեք ամիս շուտ։

— Այ, դա շատ լավ է,— բացականչեց երիտասարդներից մեկը։

— Իհարկե, լավ է։ Սովետական մարդու համար չկա ավելի նվիրական ցանկություն, քան անձնվիրաբար աշխատելը... Խոշոր ձեռնարկություններից են նաև մեքենաշինական գործարանը, որը 13 տեսակի մեքենաներ ու սարքավորումներ է արտադրում կաթ վերամշակող ձեռնարկությունների համար, ինչպես նաև տրիկոտաժի, կոշիկի, գործվածքային, մորթու-մուշտակի ֆաբրիկաները, տեղական արդյունաբերության և մսի կոմբինատները, հացի, կաթի, լիմոնադի, հրուշակեղենի և կղմինդր-աղյուսի գործարաններն ու ֆաբրիկաները։ Ամեն տարի ավելանում է մեր ձեռնարկությունների արտադրանքը։ Դա նշանակում է՝ մեր բնակչությունը կստանա ավելի շատ բրդյա, բամբակյա և մետաքսյա նուրբ ու գունազարդ գործվածքներ։ Առաջիկա երկու-երեք տարում մենք կունենանք եւ մի քանի նոր ձեռնարկություններ։ Ներկայումս այստեղ կառուցվում է կարի ֆաբրիկա, որի շինարարության վրա կծախսվի 72 միլիոն ռուբլի, ավտովերանորոգման և գարեջրի գործարաններ, գորգագործական ֆաբրիկա։ Արդեն պատրաստ է տեղարդ կոմբինատի մեխանիկական գործարանը։

— Իսկ ձեռնարկությունների բանվորներն ու շինարարներն ապահովվա՞ծ են լավ բնակարաններով,— թարգմանչի միջոցով հարցրեց չին երիտասարդներից մեկը։

— Բանվորներին լավ բնակարաններով ապահովելը մեր երկրում առաջնահերթ խնդիր է համարվում։ Քաղաքում ամեն տարի կառուցվում են 3—5 հարկանի շատ բնակելի շենքեր։ Միայն Ի. Վ. Ստալինի անվան այս պողոտայում, ուր ապրում ենք մենք, քիմիագործների ընտանիքների համար կառուցվել է 16—36 բնակարանանոց ութ խոշոր շենք։ Նրանց համար կառուցված են երկու բարեկարգ թաղամասեր՝ բանվորական ավաններ։ Իրենց գեղեցիկ ու խոշոր բնակելի շենքերն ունեն նաև մեքենաշինական գործարանը, տրիկոտաժի, կոշիկի, գործվածքային ֆաբրիկաները։

— Ընկե՛ր Սամսոն, իսկ այդ ի՞նչ շենք է կառուցվում մեր բնակարանի դիմաց,— հարցրեց չինացի աղջիկը։

— Դա քիմիագործների կուլտուրայի պալատն է։ Դա կլինի մեր քաղաքի ամենագեղեցիկ և հոյակապ շենքերից մեկը։ Առհասարակ մեր քաղաքը հարուստ է կուլտուրայի օջախներով։ Ունենք Պետական դրամատիկ թատրոն, քաղաքային կինո-թատրոն, կուլտուրայի երկու տուն, հանգստի պարկ, ինչպես նաև գավառագիտական թանգարան և բազմաթիվ ակումբներ ու գրադարան-ընթերցարաններ։ Քաղաքում կա չորս պոլի-



2. Թումանյանի անվան դպրոցի պիոներական սենյակում։

կլինիկա, երեք հիվանդանոց, բուժարաններ, մանկամսուրներ։ Կանաչազարդ անտառի ստորոտում, երկնասլաց բարդիների ու եղևնիների դաշտերի գրկում գտնվում է «Հայաստան» սանատորիան, որտեղ հանգստանում և բուժվում են Սովետական Միության բոլոր ծայրերից եկած հազարավոր աշխատավորներ։ Միայն անցյալ ամառ այստեղ ուղեգրերով հանգստացան Դոնբասի 400 հանքափորներ ու մետաղագործներ։

Նախասովետական շրջանում եղած մեկ յոթնամյա դպրոցի փոխարեն այժմ այստեղ կա 14 մասսայական և 3 բանվորական դպրոց, երաժշտական դպրոց և տեխնիկում, մանկավարժական և բժշկական ուսումնարաններ, գյուղատնտեսական, անտառային տեխնիկումներ։ Նախատեսված է բաց անել նաև առևտրի տեխնիկում։

Կիրովի անվան գեղեցիկ հրապարակում, քաղկոմի վարդագույն, հոյակապ շենքի դիմաց բարձրանում է ռևոլյուցիայի տրիբուն Ս. Մ. Կիրովի գրանիտե արձանը։ Ահա այսպիսին է մեր Կիրովականը։

— Հրաշալի է, ուղղակի հրաշալի,—կրկնեցին բոլորը, և մի պահ նրանց հայացքներն ուղղվեցին դեպի դուրս, ուր հազարավոր էլեկտրական լույսերի ոսկեգույն ցոլքով շողշողում էր հարազատ քաղաքը։

## ՀԱՎԻՏԵՆԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

(Աֆրիկական ժողովրդական հեքիաթ)

Հոականգա Նումիդահավն ու Հոամբամբա կոկորդիլոսը երդվել էին, որ հավիտենական բարեկամներ կլինեն։ Այդ օրվանից նրանց երեխաները, ծնողները, եղբայրները, քույրերը, քեռիները, քավորները, հորաքույրները, մորաքույրները, հորեղբորորդիներն ու հորեղբորաղջիկները բարեկամներ էին։ Փոքրիկ նումիդահավերը խաղում էին փոքրիկ կոկորդիլոսների հետ, իսկ ծերերը սիրում էին նայել ջահելների խաղերին։

Մի առավոտ Հոամբամբան պառկել էր գետափին ու հաճույքով նայում էր իր երեխաներին, որոնք խաղում էին Հոականգայի երեխաների հետ։

Հանկարծ նա մի ձայն լսեց.

— Բարի օր, Հոամբա՛մբա։

Դա մոտեցող Բորենին էր։

— Էհե՜, տեսնում եմ, որ քո ճաշին ես նայում,— ասաց նա։

— Իմ ճաշի՞ն,— հարցրեց Հոամբամբան.— դրանով ի՞նչ ես ուզում ասել։

— Այո, նումիդահավերը լավ ուտելու բաներ են։ Ես էլ շատ կուզենայի նումիդահավ ուտել, բայց նրանք չափազանց արագ են թռչում ու փախչում։

— Ես նումիդահավ չեմ ուտում,— պատասխանեց Հոամբամբան.— մենք Հոականգայի հետ երդվել ենք, որ հավիտենական բարեկամներ կլինենք։

— Ավելի լավ. նրանք քեզանից չեն վախենում ու դու նրանց հեշտությամբ կբռնես։

— Բայց անասունները կասեն, որ ես ստախոս եմ։

— Ինչ ասում են, թող ասեն, իսկ դու լավ ճաշ կունենաս։

— Կարծում ես, որ ես կարո՞ղ եմ այդպես անել։

— Դա դժվար բան չէ։ Մի քիչ մտածիր, թե ինչպիսի հիանալի բան է փոքրիկ նումիդահավը։

Բորենին գնաց, ու Հոամբամբան մենակ մնաց։ Բայց փոքրիկ նումիդահավերը տեսել էին Բորենուն։ Նրանք վախենում էին այդ չար գազանից. այդ պատճառով թռան ու գնացին իրենց մոր մոտ։

— Օ՜,— ասացին նրանք իրենց մորը,— մենք տեսանք Բորենուն։

— Նա գետափո՞վ էր գնում,— հարցրեց Հոականգան։

— Այո։ Եվ նա խոսեց Հոամբամբա պապի հետ։

Հոականգան մտածեց. «Բորենին չար գազան է. Հոամբամբան նրան ականջ է դրել։ Բորենին ի՞նչ է ասել նրան։ Կոկորդիլոս պապը շատ մեծ բերան ու լավ ախորժակ ունի։ Մեծ անասուններին չի կարելի վստահել»։

Նա կանչեց իր երեխաներին ու ասաց նրանց.

— Այսուհետև չխաղաք փոքրիկ կոկորդիլոսների հետ և ասացեք մեր բոլոր ազգականներին, որ նրանք չմոտենան Համբամբա պապին։

— Օ՜, մայրի՛կ,—բացագանչեցին փոքրիկ նումիդահավերը,— մենք շատ ուրախ ենք, որ չենք խաղալու փոքրիկ կոկորդիլոսների հետ։ Նրանք արդեն երկար ու սուր ատամներ ունեն։

Մի քանի օր հետո Բորենին դարձյալ այցելեց Համբամբային։



— Նումիդահավ կերա՞ր,— հարցրեց նա։

— Ո՛չ, բարեկա՛մ. չգիտեմ, թե նրանց ինչ է պատահել. նրանք էլ ինձ չեն այցելում։

— Վախենում են։ Ահա թե ինչ պիտի անես...

Եվ Բորենին մի քանի խոսք փսփսաց կոկորդիլոսի ականջին։

Մյուս օրը Համբամբայի ավագ որդին եկավ Հաականդայի մոտ. նա լաց էր լինում ու աղաղակում.

— Հայրս մեռել է, Համբամբան մեռել է։ Մորաքո՛ւյր Հաականգա, եկեք նրա թաղմանը։

— Մայրի՛կ, մենք չենք գնա,— ասացին փոքրիկ նումիդահավերը,— վախենում ենք։

— Ոչ, ոչ. ես ուզում եմ իմանալ՝ չի՞ խաբում արդյոք մեզ կոկորդիլոսը։ Թաղմանը կգնանք, բայց դուք ջրին չմոտենաք, իսկ երբ կտցով չրխկացնեմ, դուք իսկույն կթռչեք ու կգնաք։

Փոքրիկ նումիդահավերն ու նրանց մայրը գնացին դեպի գետափ ու տեսան, որ Համբամբան պառկել է մեջքին։ Ընտանիքը հավաքվել էր նրա շուրջն ու ողբում էր։

— Մոտեցեք,— ասաց նրանց Համբամբայի ավագ որդին,— և նայեցեք իմ խեղճ հորը։ Նա մեռավ այս առավոտ։ Խեղճ, թանկագին, ծերունի հայրիկ։ Դե, մոտեցեք։

— Խե՜ղճ Համբամբա,— ասաց Հաականդան։— Իսկապե՞ս նա մեռել է. իսկ ես այդպես չեմ կարծում։ Նա այնպիսի շարժումներ չի անում, ինչպիսին բոլոր մեռելներն են անում։

— Շարժումնե՞ր։ Մի՞թե մեռելները շարժումներ են անում։

— Ինչպե՜ս, մի՞թե դուք չգիտեք, որ մեռելները բաց են անում իրենց բերանները, երբ նրանց ասում են՝ «բերանդ բաց արա» և շարժում են իրենց թաթերը, երբ նրանց ասում են՝ «թաթերդ շարժիր»,— ասաց Հաականդան։

— Օ՜, թանկագին մորաքույր, նա իսկապես է մեռել։ Ասացեք նրան, որ նա իր բերանը բաց անի։

— Բերանդ բաց արա,— գոչեց Հաականդան։

Համբամբան բաց արեց իր լայն բերանը։ Այն ժամանակ նումիդահավն ուժգին կերպով չրխկացրեց իր կտցով, թռավ ու գնաց իր փոքրիկների հետ։

Ահա թե ինչու են նումիդահավերը չրխկացնում կտցով, թռչում են ու գնում, երբ կոկորդիլոս են տեսնում։

Զուլու. թարգմ. Գ՛Ր. ԱՐԵՏԱՆ















1. Ընձառյուծ. 2. Հնդրոպանի ֆլամինգոներ (կարմրաթևիկ). 3. Բերբերական առյուծներ. 4. Հարավ-Ամերիկյան լամաներ (ալպակա). 5. Սպիտակ արջ Հեռավոր Հյուսիսից. 6. Ուսուրական վագր. 7. Աֆրիկական զեբրեր (վագրաձի). 8. Վոլգա անունով Հնդկական փիղը. 9. Գետաձի Աֆրիկայից

Ֆոտո՝ Հ. ՀԻՐԵԹՅԱՆԻ և Ս. ԽՈՍՐՈԵՎԻ

# ՁՄԵՌԸ ԿԵՆԴԱՆԱԲԱՆԱԿԱՆ ԱՅԳՈՒՄ












Հետաքրքիր է ձմեռը Երևանի կենդանաբանական այգում: Այնտեղ աշխարհի բոլոր ծայրերից բերված մեծ ու փոքր գազանների, թռչունների և սողունների համար կառուցված են բացօթյա վանդակներ և լուսավոր, տաք ու հարմար ձմեռանոցներ:

Բայց երբ իջնի սենյակի ջերմաստիճանը, կամ միջանցիկ քամի անցնի, առյուծներն ու վագրերը կմրսեն, կապիկները կհիվանդանան թոքերի բորբոքումով, հարբուխ կբռնեն...

Երբ ներս մտանք, ձմեռանոցներում ուրախ հարձայունով վառվում էին փայտի կոճղերն ու հանելի ջերմության տարածում շուրջը:

Պատերի երկայնքով գետնից մոտավորապես մեկ մետր բարձրության տախտակների վրա շարված էին Աֆրիկայի բնակիչների վանդակները:

Հանկարծ օդում խնլանեղ ոստյուններ կատարելով սկսեցին ճչալ կապիկները, ծամածռեցին կենոտ դեմքերը, բարկացած հովազը զարնվեց վանդակի ճաղերին, պոչով խփեց հատակին, վագրը մռնչաց, առյուծներից ամենամեծը ելավ տեղից, թափահարեց բաշն ու սկսեց ետ ու առաջ քայլել վանդակում:

— Օտար մարդկանց են տեսել,— ասաց մեր ուղեկիցը, անասնաբույժ ընկեր Սուքիասյանը,— այստեղ փակված, մի քանի ամիս նրանք ոչ ոքի չեն տեսնում: Հետո նա մոտեցավ վանդակներին, սիրալիր խոսքեր ասաց, շոյեց «Նոսուխա» կոչվող շատ հազվագյուտ կենդանուն:

— Յաշկայի հայրենիքը Հյուսիսային Ամերիկան է, բայց ինքը մեր երկրում է ծնվել, երբ ամսական էր:

Տեսնելով իրենց բարեկամին, բոլորը խաղաղվեցին, միայն կապիկներն էին ծամածռություններ անում:

— Այս ի՞նչ է,— բացագանչեցինք մենք, և մեծ եղավ մեր զարմանքը, երբ բավականին մեծ մի վանդակում տեսանք երկու կենդանու՝ առյուծի ձագին Տարզանին և Դիկ անունով շնիկին:

Ընկեր Սուքիասյանը նայեց պատից կախված ջերմաչափին:

— 20 աստիճան,— գոհ շշնջաց նա, խորհուրդներ տվեց ներքապահ սպասուհուն և դուրս եկավ...

Մառերների առաջ կանգնած, ուտում էին բուրավետ խոտն ու սև, գեղեցիկ աչքերով մեզ էին նայում եղջերուների, քարայծերի և մուֆլոնների մի քանի տեսակներ:

— Այս ի՞նչ կենդանիներ են, ուղտ են, թե՞ այծ:

— Ե՛վ ուղտ, և՛ այծ,— ժպտալով պատասխանեց ընկեր Սուքիասյանը, սրա իսկական անունը լամա է: Լամաները լինում են երեք տեսակ՝ լամա, վիկունյա, և ալպակա:

Այնտեղ մենք տեսանք զամբյուղի նախահորը՝ անտային, պապիրին:



— Իսկ սա, յակն է, Պամիրի բնակիչը: Հայրենիքում յակը բեռներ է կրում, հեշտությամբ անցնում է լեռնային արահետներով:

Մենք տեսանք շերտավոր զեբրին, իր բարեկամ պոնիի՝ շոտլանդական ձիուկի հետ:

— Իսկ ո՞ւր են փղերը:

— Փղերը, նույնպես ձմեռանոցում են գտնվում,— ասաց ընկեր Սուքիասյանը,— հիմա կգնանք փղերի մոտ, նախ գնանք Մարսին տեսնելու:

— Մարսի՞ն, իսկ լուսին չե՞նք տեսնելու,— կատակեցինք մենք:

— Ահա և Մարսն իր ընկերուհի Նինայի հետ...

Մեզ տեսնելով սպիտակ արջերն իսկույն նետվեցին ջրավազանի մեջ և դժգոհ փնչփնչացին...

— Ահա և Վովան ու Միկը:

Մեր ուղեկիցը պատմեց, որ փղերից յուրաքանչյուրը մեկ օրում ուտում է 150 կիլոգրամ տարբեր տեսակի բուսական կեր, շաքար և հաց...

— Իսկ որքա՞ն է նրանց քաշը:

— Երկուսինը՝ մոտ 10.000 կիլոգրամ:

Հետո մորաքույր Մարուսյան բաց արեց մի դուռ, և մենք ներս մտանք: Ջրի մեջ կիսով չափ ընկղմված էր մի հսկայական գետաձի՝ բեգեմոտ:

— Նա միայն երեք տարեկան է,— ասաց մորաքույր Մարուսյան և հագնելով ռետինե երկարաճիտ կոշիկները, մտավ ջրավազանի մեջ և խփելով գետաձիու դնչին, զորովանքով խնդրեց.

— Վեր կաց, Ցո՛ւսիկ, դե՛, ծույլի՛կ, վե՛ր, թող տեսնեն ինչպիսին ես դու:

Բայց գետաձի Ցուսիկը տաք ջրից դուրս գալու միտք էլ չուներ: Նա ծույլորեն բացեց վարդագույն կոպերով դուրս պրծած աչքերը, հազիվ կանգնեց կարճլիկ ոտքերի վրա, ապա աղմուկով նորից պառկեց ավազանի մեջ:

Հետո կանգ առանք կլոր, աշտարակի նման բավականին բարձր մի շենքի առաջ:

— Ողջո՛ւյն, ողջո՛ւյն, ողջո՛ւյն ձեզ,— հանկարծ հնչաց մեկը:

— Ա՛խ դու, չարաճճինե՛ր,— ծիծաղեց մեր ուղեկիցը,— այս թութակները մեզ լուսամուտից տեսան:

— Համեցեք,— դուռը բաց անելով ներս հրավիրեց պահապանը: Մենք ներս մտանք:

Այնտեղ կային տարբեր չափի ու տեսակի արակատու, մոխրագույն ժակո, ամազոնի կանաչ թութակներ: Կարծես մի ձեռք ներկել էր նրանց աշխարհի բոլոր գույներով:

Վալյա անունով թութակին ռուս զինվորները վերցրել են 1914 թվականի պատերազմի ժամանակ գերմանական մի գեներալից: Վալյան 85 բառ գիտե, պարում է և երգում: Վալյայի 60 տարին անցել է, բայց նա դեռ մանկան պես կայտառ է:

— Նինա, նվագիր Վալյայի համար,— ասաց ընկեր Սուքիասյանը:

Երբ Վալյան լսեց «Հոպակի» ծանոթ հնչյունները, փռեց թևերն ու սկսեց ոստոստալ:

Նվագը դադարեց: Վալյան բաց արեց սպիտակ կոպերով աչքերն ու հարցրեց.

— Հիմարի՞կ է Վալյան:

— Ոչ, ոչ, Վալյան խելացի է, լավն է Վալյան,— ասաց ընկեր Սուքիասյանը:

— Ողջույն, ողջույն, ցտեսություն,— նորից հնչաց Վալյան ու թափահարելով թևերը հեռացավ:

— Ցտեսությո՛ւն, Վա՛լյա, սիրելի թռչնիկ, ցտեսությո՛ւն,— հրաժեշտ տվինք մենք նրան և դուրս եկանք կենդանիների փոքրիկ աշխարհից:

*Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ*

## ՁՅԱՆ ՓԱԹԻԼՆԵՐԸ

Ձյունը եկավ սարեր պատեց.
Սահնակ շինեց մեր ժիր Արան.
Ու սահնակով սահեց, սահեց,
Հասավ մինչև գետաբերան:

Գետի ափով, տե՛ս, սառցապատ.
Սլանում է փոքրիկ Արան...
Փաթիլներն են թափվում առատ,
Թիթեռի պես նստում վրան:

Կ. ՇԻՐԿՅԱՆ

(Նոր Բայազետի դպրոցի աշակերտ)




# ԸՆԿԵՐ ԼԵՆԱՆ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Ֆոտո՝ Ս. ՏԵՐ-ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

— Ընկե՛ր Լենա...

Դպրոցում ամենքը նրան հենց այդպես էլ կոչում են։ Նա մի միջահասակ խնդումերես աղջիկ է, որը կարճ ժամանակամիջոցում դարձել է Երևանի Շահումյանի անվան դպրոցի բոլոր պիոներների սիրելին։ Ասենք, ինչո՞ւ միայն պիոներների։ Ավագ ջոկատավար Լենա Մանուկյանին սիրում են նաև ուսուցիչները։

— Լենան մեր լավագույն օգնականն է,— ասում են նրանք։

Հեշտ չէր այդ գովեստին հասնելը։

Դրա համա՛ր անհրաժեշտ էր մոտիկից ու խորը կերպով ճանաչել դրուժինայի հարյուրավոր պիոներներին, իմանալ նրանց ձգտումներն ու հետաքրքրությունները, վերահաս լինել այն սայթաքումներին, որ երբեմն թույլ են տալիս պիոներները ուսման մեջ, կամ հասարակական պարտականությունները կատարելիս։

Ահա օրինակ, ինչ պատահեց.

Յոթերորդ ջոկատից Վոլոդյա Ներսիսյանն անսպասելիորեն սկսեց վատ սովորել, խախտել կարգապահությունը։ Ինչքա՜ն ցավալի էր այդ բոլոր ընկերների և ուսուցիչների համար, ինչքա՜ն ցավալի էր Լենա Մանուկյանի համար։ Չէ՞ որ Վոլոդյան լավ պիոներ էր և լավ աշակերտ։ Այն ժամանակ, երբ կոլեկտիվը ողջ ուշադրությունը լարել էր ետ մնացողների վրա, պարզվեց, որ սայթաքում են նաև լավ սովորող պիոներներից ոմանք։ Այդ շրջանում ինքը՝ Վոլոդյան էլ մի տեսակ ընկրճված էր երևում։ Նրան ավելի հաճախ կարելի էր տեսնել մենակ։

— Ի՞նչ է պատահել քեզ, Վոլո՛դյա,— հարցրեց նրան մի անգամ ընկեր Լենան։

Վոլոդյան գլուխը կախ գցեց։ Ապա համարձակություն ստանալով, թոթովեց.

— Ընկե՛ր Լենա, ինձ փոխադրեցեք մի ուրիշ դպրոց...

— Ինչո՞ւ, մի՞թե քեզ մեր դպրոցում, մեր կոլեկտիվում որևէ մեկը նեղացրել է, կամ վիրավորել...

Վոլոդյան լուռ էր։

— Ո՞վ է քեզ վիրավորել, ինչի՞ց ես դու դժգոհ,— կրկնեց իր հարցը ավագ ջոկատավարը։

— Ոչ ոք... ես ոչնչից դժգոհ չեմ...

Երբորեն, աշխատելով պատանու ինքնասիրությանը չդիպչել, ընկեր Լենան ձգտում է իմանալ այն պատճառները, որոնք այդքան ազդել են տղայի վրա։

Մի անգամ ընկեր Լենան որոշեց Վոլոդյայի հետ միասին գնալ նրանց տուն։ Գուցե հնարավոր լինի այդ պատճառը գտնել նրա ընտանիքում։ Ավագ ջոկատավարը տղայի ուսը գրկած, նրա հետ միասին քայլում էր։ Սակայն Վոլոդյայենց տան մոտերքում պատահեց անսպասելին։ Վոլոդյան հանկարծ իրեն մի կողմ նետեց, ուսն ազատեց ընկեր Լենայի թևից և փախավ անհետացավ հարևան փողոցում։

Լենա Մանուկյանը մնաց շվարած։ Ինչո՞վ բացատրել տղայի վարմունքը։ Մի՞թե ավագ ջոկատավարի հանդեպ տղան կորցրել է իր համակրանքը։ Ոչ, չի կարող պատահել։ Լենան լավ է ճանաչում իր պիոներին, նրա աչքերը բոլորովին հակառակն էին ասում։ Նա հասկանում էր, որ Վոլոդյան փախավ ամոթից։ Ամոթը թույլ չէր տալիս տղային վկա լինելու մի զրույցի, որտեղ պետք է խոսեին

իր անկարգապահ լինելու, իր ստացած «2» գնահատականների մասին։

Տղայի ծնողների հետ ունեցած զրույցը հաստատեց Լենա Մանուկյանի ենթադրությունը։

Իսկ հաջորդ օրը նրան մոտեցավ ինքը Վոլոդյան և ամեն ինչ խոստովանեց...

— Տեսնո՞ւմ ես, Վոլո՛դյա, քո մի սխալը ինչպիսի հետևանքներ ունեցավ,— ասաց ընկեր Լենան։— Պարզ երևում է, որ քո այդ անսպասելի երկուսները հետևանք են այն բանի, որ դու ֆուտբոլով չափից ավել տարվելով թերացել ես ուսման մեջ։ Սպորտով պարապելը, իհարկե, լավ է, միայն թե այն չխանգարի ուսման գործին։ Բայց դու գործել ես մի ավելի մեծ սխալ, որ պիոներին վայել չէ։ Որոշել ես փոխել դպրոցը։ Այդպես չպետք է վարվի պիոները։



Լենա Մանուկյանը զրուցում է պիոներների հետ։

— Ես ներողություն եմ խնդրում, ընկե՛ր Լենա,— շշնջաց Վոլոդյան։

— Ներողությո՞ւն, ինչո՞ւ համար։

— Այն, որ փախա... Ես ամաչում էի...

— Գիտեմ, գիտեմ,— ընդհատեց նրան ընկեր Լենան։— Այժմ դու աշխատիր այնքան համարձակություն ունենալ, որ ուղղես քո սխալը, նորից առաջավոր լինես, վերականգնես քո մասին ընկերներիդ ունեցած կարծիքը։ Այդ կլինի ճիշտ ճանապարհը։

Հիմա Վոլոդյան նորից առաջավորն է։ Նորից նրան սիրում են ընկերները, ուսուցիչները, և նա նորից համարձակ ու վստահ է նայում սիրելի ավագ ջոկատավարի աչքերին։

***

Լենա Մանուկյանը վաղուց չէ, ինչ ավարտել է Երևանի Մոլոտովի անվան Պետական համալսարանի ֆիլոլոգիական ֆակուլտետը։ Ընդամենը երեք տարվա պատմություն է այդ։ Սակայն այդքան ժամանակամիջոցում նա բավականին զգալի փորձ է ձեռք բերել։

Դառնալով իր նախկին ուսուցիչների սիրելի օգնականը, Լենան նրանցից սովորել է ամենագլխավորը, որը նրան ղեկավարում է իր ամենօրյա աշխատանքում։ Այդ անսահման հոգատարությունն է երեխաների նկատմամբ։

Յոթերորդ դասարանցի Արփիկ Մուրադյանը, որը դպրոցի լավագույն աշակերտներից է, չէր հասկանում, որ միայն լավ սովորելով չի կարելի ավարտած համարել աշակերտի և պիոների պարտականությունները։ Արփիկը լավ էր սովորում, բայց բոլորովին հոգ չէր տանում իր այն ընկերների մասին, որոնք ետ էին մնում ուսման բնագավառում։

— Ես ժամանակ չունեմ,— ասում էր նա,— երաժշտական դպրոց էլ եմ գնում...

Ընկեր Լենան օգնության հասավ նրան։

Չէ՞ որ բնավորության նման գծերը ապագայում կարող էին խանգարել հենց իրեն՝ Արփիկին։ Եվ ավագ ջոկատավարն Արփիկին օգնեց կազմելու աշխատանքային և հանգստի օրինակելի ռեժիմ։ Արփիկն այժմ շարունակում է պարապել երաժշտությամբ և միաժամանակ օգնում է ետ մնացող ընկերներին։

***

Լենա Մանուկյանը պիոներների համար կազմակերպում է հետաքրքրական էքսկուրսիաներ, հավաքույթներ, զրույցներ։

Լենան, ոչ շատ վաղուց, երկրորդ ջոկատի պիոներներին էքսկուրսիայի տարավ Երևանի ժամացույցի գործարան, որտեղ երեխաներն իրենց աչքով տեսան, թե ինչպես է հավաքվում ժամացույցը, ինչպես են պատրաստվում ժամացույցի մասերը՝ ամենափոքր պտուտակից սկսած, մինչև ժամացույցն ամփոփող տուփը։

Երեխաները դրանից հետո անընդհատ հարցնում են.

— Ընկե՛ր Լենա, մեկ էլ ե՞րբ ենք գնալու էքսկուրսիա։

— Շուտով, շուտով,— պատասխանում է ավագ ջոկատավարուհին։

Եվ երեխաները համոզված են, որ Լենան շարունակ մտածում է իրենց առօրյան հետաքրքրական ձևով անցկացնելու մասին։

Յուրաքանչյուր պիոներ գիտե, որ Լենա Մանուկյանը իր լավ բարեկամն է, որ նա պատրաստ է ամեն վայրկյան օգնության ձեռք մեկնելու իրեն։

Եթե դուք այցելեք Երևանի Շահումյանի անվան դպրոցը և ցանկանաք տեսնել Լենա Մանուկյանին, ապա ոչ մի դժվարություն չեք հանդիպի։ Նայեցեք, թե որտեղ են հատկապես մեծ թվով պիոներներ խմբվել։ Ուշադիր լսեցեք և անպայման դպրոցի միջանցքներում կամ բակում դուք կլսեք պատանեկան ձայն, որը կանչում է.

— Ընկե՛ր Լենա...

Ընկեր Լենան միշտ իր պիոներների հետ է։ Իր պիոներների, որոնց խմբում հաճախ դժվար է լինում նույնիսկ նշմարել նրան առաջին հայացքից։ Նույնպես կարմիր վզկապով, նույնպես ժիր ու պատանեկան աշխույժով լի, սակայն իր պիոներների հանդեպ սիրով ու հոգատարությամբ, ուշադրությամբ լեցուն։

Այդպիսին է ընկեր Լենան։

## ԱՅՍՊԵՍ ԱՇԽԱՏԵՑԻՆ

ԱԼ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

Հունվարի ցուրտ օրերից մեկն էր։ Խոշոր փաթիլներով առատ ձյուն էր գալիս։ Դպրոցի ազատ դասասենյակներից մեկում պիոներական ջոկատի հավաքույթ էր։ Կոլտնտեսության զոոտեխնիկ Սուրեն Մուրադյանը երեխաների խնդրանքով պատմում էր խոճկորների խնամքի մասին։ Երբ նա ավարտեց իր խոսքը, Նինան ոգևորված ոտքի կանգնեց.

— Ջա՜ն, դա իսկական մեր բանն է, ես խոզուկներ շատ եմ սիրում. մենք լավ կըխնամենք չէ՞, աղջիկնե՛ր,— դիմեց նա ընկերուհիներին։

— Ո՞վ ասաց, դա տղաների գործ է,— վերջին նստարանից լսվեց Էդիկի սուր ձայնը.— դուք ինչպե՞ս կարող եք ամռան շոգին նրանց գետում լողացնել, արոտ տանել և... գայլերից պաշտպանել։

— Ի՞նչ քաջն ես. մի տեսեք՝ գայլերի հետ է կռվում,— քրքջացին այս ու այն կողմից։

— Լավ, մի՛ աղմկեք, բոլորիդ էլ բաժին կհասնի,— նրանց կարգի հրավիրեց ավագ ջոկատավար Սոնյա Քոսակյանը։

Այսպես աշխույժ անցավ Շամշադինի շրջանի Բերդ գյուղի միջնակարգ դպրոցի պիոներական դրուժինայի երրորդ ջոկատի հավաքույթը։ Նրանք հենց նույն օրը բնագիտության ուսուցչուհի ընկեր Շուշիկ Հովակիմյանի ուղեկցությամբ գնացին դեպի իրենց «Նոր կյանք» կոլտնտեսության գրասենյակը։

— Այ, ինչ եմ ասե՜լ, խոզաբուծական ֆերմայի շեֆությունը վերցնելը գովելի նախաձեռնություն է։ Վաղը ես ձեզ կուղարկեմ ֆերմա։ Միայն թե, խնդրում եմ բոլորդ միասին չգնաք, թե չէ մեր խոճկորները կամաչեն,— ասաց կոլտնտեսության նախագահը։

Բոլորը ծիծաղեցին։

Մյուս օրը նրանք գնացին ֆերմա։

Ջոկատի պիոներները, մանավանդ փոքրերը, առաջին անգամն էին լինում ֆերմայում։ Նրանց շատ դուր եկավ լուսավոր ու ընդարձակ գոմը։ Ներսում, շենքի ամբողջ երկարությամբ ձգվում էր լայն միջանցքը, իսկ նրա երկու կողմերը ճաղերով բաժանված էր վանդակների։ Ամեն մի մայր խոզին ու

նրա խոճկորներին հատկացրել էին իրար կից երկու վանդակ։

Գոմի մյուս ծայրից լսվում էր նոր ծնված խոճկորների սուր ծվծվոցը։ Զոոտեխնիկը երեխաներին տարավ դեպի այն կողմը։ Նրանց առաջ պառկած էր բաց-վարդագույն մի մեծ խոզ։ Խոճկորները կողք-կողքի շարված, իրար հրմշտկելով, ծծում էին մոր կուրծքը։

— Ինչ որ տանկ լինի,— նրա ծանր ու խոշոր մարմնին նայելով ասաց Քնարիկը։

— Ճիշտ որ,— բացագանչեցին մի քանիսը ու ավելի մոտ եկան։— Տանկ էլ կոչենք։

— Այժմ ո՞ւմ ենք հանձնում «Տանկին» ու նրա 16 խոճկորներին,— ջոկատավարին դիմեց զոոտեխնիկը։



Մյուս օրը նրանք գնացին ֆերմա։

Քոսակյանը բացելով ցուցակը, կարդաց Գևորգյան Էդիկի, Պողոսյան Նինայի, Զաքարյան Քնարիկի և էլի մի քանիսի անունները։ Ջոկատի մյուս անդամները պետք է մի երկու շաբաթ էլ սպասեին, մինչև որ փետրվար ամսին սկսվեր մասսայական ծինը։

Այդ օրվանից ամուր կապ ստեղծվեց ֆերմայի մարդկանց ու պատանի խոզաբույծների միջև։ Առաջին օրվանից երեխաները հերթապահություն սահմանեցին։ Ամեն անգամ նրանք մի նոր բան էին սովորում։ Մի քանի օր անց, նրանք նկատեցին, որ մոր կաթը խոճկորներին չի բավարարում։

— Ի՞նչ անենք, ախր նրանք ուտել են ուզում, հետո ջուր էլ չենք տալիս,— մտահոգված ընկերներին էր դիմում Ժենյան։

Մելսիկն ինքն էլ չգիտեր, թե ինչ ասի։ Նա մտածում էր այն մասին, որ եթե մեկն ու մեկին մի բան պատահի, ամոթով կմնան ջոկատի առաջ։ Նա վազեց Գրիգոր քեռու մոտ։

— Բան էլ չի պատահի,— հանգստացրեց ծերունի խոզապահը։— Ժամանակն է, հինգ օրականից արդեն հարկավոր է նրանց լրացուցիչ սնունդ տալ, այդպես է կարգը։ Ջուր նույնպես հարկավոր է, միայն մաքուրը պետք է տալ։

Պիոներներն այդպես էլ արեցին։ Մի քանի օր հետո սկսեցին նաև հատիկային կեր տալ։

Տախտակից պատրաստված կերակրամանների մեջ լցնում էին եգիպտացորենի, ցորենի կամ վարսակի բոված հատիկներ և երկար ժամանակ նայում էին, թե ինչպես էին փոքրիկ ագահները խռխռացնելով ու իրար հրելով միմյանց առջևից խլում և հաճույքով խժռում համեղ կերը։

Քսանհինգ օր հետո նրանք ավելացրին կերի տեսակները, այս անգամ տալիս էին մանրած դդում, ճակնդեղ, դդում և կիսաեփ կարտոֆիլ։

Մի օր էլ դասերից հետո նրանք հայտնվեցին ուսուցչանոցում։ Դիրեկտորից պիոներները երեք կիլոգրամ կավիճ խնդրեցին։

— Ինչի՞ համար է,— զարմացած հարցրեց նա։

Երեխաները գրքերից իմացել էին, որ առանց կավիճի, խոճկորները կարող են հիվանդանալ։

— Դարձյալ ձեր «Տանկը»,— փաղաքշաբար ասաց նա և տնտեսվարին իր մոտ կանչեց։

Կավիճն ստանալով, նրանք ուրախ-ուրախ դուրս եկան դպրոցի բակից։

— Նինա, դու վազիր տուն փայտածուխ ճարիր, իսկ մենք...— Էդիկն այլևս շարու-

նակել չկարողացավ։ Նա ուզում էր ասել, որ կգնան վերին հանդը կարմիր կավ բերելու, բայց տխրությամբ նայեց ձյունածածկ դաշտին ու լռեց։

Կարմիր կավն անհրաժեշտ էր արյան պակասության դեմ կռվելու համար։ Այնուամենայնիվ մի բան պետք էր անել։ Եվ նա մի փոքր լռելուց հետո շարունակեց.

— Մենք կգնանք ֆերմա։

Ֆերմայում նրանք իմացան, որ կարմիր կավի փոխարեն կարելի է ծծմբաթթվային երկաթի լուծույթ տալ։

Խոճկորներն արդեն մեկ ամսական էին դարձել։ Նրանց մեկ-մեկ դրեցին կշեռքի վրա։ Արդյունքը հիանալի էր՝ 13—15 կիլոգրամ քաշ ունեին։ Լենորան հաշվառման մատյանում ամսաթիվը նշանակելուց հետո սկսեց գրանցումները. «Խայտաբղետը»՝ 15 կգ., «Սևադնչիկը»՝ 13 կգ., «Կավարաը»՝ 14 կգ...

Առաջին հաջողությունը խրախուսեց բոլորին։ Ջոկատը, որ արդեն երեք մայր խոզերի խոճկորների խնամքը վերցրել էր իր վրա, մրցման հրավիրեց յոթնամյա դպրոցի պիոներներին, որոնք վերցրել էին նույն կոլտնտեսության հորթերի շեֆությունը։

Մի օր, երբ «Տանկը» իր խոճկորներով շրջապատված ծանրորեն անցնում էր նրանց առջևից, Սվետլանան ասաց.

— Եկեք մի փոքր հաշիվ անենք, տեսնենք, թե որքան միս ու ճարպ կտա մեր «Տանկի» մի տարվա սերունդը։

— Ամենաքիչը՝ 12 տոննա, ես արդեն հաշվել եմ,— ասաց Էդիկը գրպանից հանելով ծոցատետրը։

Բոլորն էլ զարմացած իրար երեսի նայեցին։ Այդ դեռ միայն մի խոզը, իսկ քանի՜



Նրանց մեկ-մեկ դրեցին կշեռքի վրա։

միլիոն խոզ կա։ Եթե կարողանային յուրաքանչյուրի մի տարվա սերունդից այդքան միս ու ճարպ ստանալ, ապա մի տեսեք, թե ի՞նչ թիվ կստացվի։

Այսպես լավ աշխատեցին Բերդի պիոներները անցյալ տարի։ Այս տարի էլ նրանք պակաս չեն ...

# ԳՈՒՅՆԵՐԻ ՄԵԾ ՎԱՐՊԵՏԸ

Լրացավ ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանի ծննդյան 75 տարին:

Մ. Սարյանը իր գեղարվեստական կրթությունը ստացել է Մոսկվայի գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարանում՝ ռուս նշանավոր նկարիչ Վ. Սերովի մոտ:

1900 թվականին Սարյանը կատարում է ճանապարհորդություն դեպի Եգիպտոս և Պարսկաստան, որտեղից իր հետ բերում է այցելած վայրերի ժողովուրդների կյանքն ու բնությունը պատկերող բազմաթիվ նկարներ:

Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելուց անմիջապես հետո Սարյանը գալիս է Երևան և ակտիվ մասնակցում է իր նոր հայրենիքի նկարչական կյանքի զարգացմանը: Սարյանի ստեղծագործության թեման է դառնում սովետական մարդը և այդ մարդու կողմից վերակառուցվող բնությունը: Նրա լավագույն պեյզաժներից են «Բամբականավարը Արարատյան դաշտում», «Սաղկող ծառեր» և այլ կտավներ, որոնց վրա նկարիչը պատկերել է այն, ինչ բնորոշ է Հայաստանի բնությանը:

Սարյանի ստեղծագործության մեջ խոշոր տեղ է գրավում դիմանկարը: Անվանի բանաստեղծ Ավետիք Իսահակյանի, ակադեմիկոսներ՝ Մալխասյանի, Օրբելու, գեներալ Բաղրամյանի և բազմաթիվ այլ դիմանկարներում Սարյանը մեծ վարպետությամբ պատկերել է նրանց ներքին աշխարհը:

1942 թվականին, Հայրենական պատերազմի ամենածանր օրերին, Մ. Սարյանը կատարում է իր «Ինքնանկարը», որը պատվավոր տեղ է գրավում սովետահայ արվեստի մեջ:

Իրեն պատկերելով վրձինը ձեռքին, կտավի առաջ, նկարիչն արտահայտել է այն միտքը, որ ինքը որպես արվեստագետ իր ժողովրդի հերոսական պայքարին մասնակցում է իր վրձինով, իր արվեստով:

Սարյանը նաև խոշոր գրաֆիկ է, գրքի նկարազարդող: Հատկապես նշանակալից են հայկական հեքիաթների համար կատարած նրա նկարազարդումները:

Հայ խոշորագույն կոմպոզիտոր Ալ. Սպենդիարյանի «Ալմաստ» օպերայի ձևավորումով Սարյանը արժանացել է Ստալինյան մրցանակի:

Նա Սովետական Միության Գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ է:

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը բարձր գնահատելով նկարչի աշխատանքը նրան պարգևատրել են շքանշաններով: Մ. Սարյանը երեք անգամ ընտրվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ:

Սարյանի ստեղծագործությունները գտնվում են Սովետական Միության բազմաթիվ թանգարաններում: Դրանց լավագույն մասը կենտրոնացված է Հայաստանի Պետական Պատկերասրահում:

Մ. ՂԱԶԱՐՅԱՆ



Արարատը գարնանը — Գործ՝ նկ. Մ. ՍԱՐՅԱՆԻ

# ՍՊԻՏԱԿ ԳԻՇԵՐ ԷՐ...

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Սպիտակ, խաղաղ ու լույս գիշեր էր։ Մեր առջևից քայլում էր չուկչի Տատոն։ Ինչպես միշտ լուռ էր ու խստադեմ։ Մեզ հետ էր նաև մի նոր որսորդ։ Նա առաջին անգամն էր մտնում տայգան. նոր էր եկել Ուկրաինայից, բարձրահասակ էր և հաստ։ Նա բարեհոգի և լավ մարդու տպավորություն թողեց, դրա համար էլ ես խնդրեցի Տատոյին.

— Թող գա,— պատասխանեց Տատոն,— միայն թե տայգայի կանոնները չխախտի։

Խոմենկոն հին որսորդ էր, բայց տայգայի որսորդներից տարբերվում էր նրանով, որ օժտված էր որսորդին հատուկ սուտ ասելու՝ «փչելու» շնորհքով, իսկ տայգայի որսորդը չի սիրում նույնիսկ պատմել որսի մասին։

Նեղ կածանը, որով մենք գնում էինք, անցնում էր խիտ թփերի և ընկած ծառերի միջով։ Ծառերի կախված ճյուղերը կպչում էին մեր երեսներին, երբեմն էլ քաշքշում մեր վերնազգեստները։ Խոմենկոն հենց առաջին իսկ քայլերին խախտեց տայգայի կանոնները։ Նա քայլում էր Տատոյից հետո և աշխատում էր պաշտպանվել ճյուղերի հարվածներից։ Ձեռքով բռնում էր ճյուղերը, ձգում առաջ, որից ճյուղը լարվում էր զսպանակի պես և հենց որ բաց էր թողնում, խփում էր իմ երեսին։ Ես զգուշացրի նրան.

— Մեղավոր եմ, մեղավոր,— շշնջաց նա և մինչև ականջները կարմրեց։

Մենք տայգայից դուրս եկանք բացատը։ Մեր առաջ փռված էր խաղաղ ու անդորր լճակը։ Մամուռի գորգերի վրա փայլում էին մուժ կապտագույն պտուղներ։ Քիչ հետո փշատերև ծառերի և կեչիների անտառի հետևից արծաթագույն հսկա սկավառակի նման բարձրացավ լիալուսինը։ Ծառերի ստվերները ձգվեցին, երկարեցին և ընկան լճակի վրա։ Խոմենկոն հիացավ լուսնի մեծությունից։ Տայգան վառվում էր արծաթե կրակով։ Լուսնի լույսը թափանցում էր ծառերի կատարներին իջած մառախուղի միջից և թվում էր, թե ծառերի գմբեթները հիմա կբռնկվեն։

— Վա՛հ,— հանկարծ գոչեց Խոմենկոն,— ի՛նչ վայրենի գեղեցկություն, ի՛նչ հրաշք։

Նա մանկան նման հափշտակվել էր։ Լուսավորված կեչիների կատարներին դիպչելով օդ բարձրացավ առաջին խլահավը և իր ծանր կռնչյունով թնդացրեց շրջակայքը։ Սկսվում էր թռչունների գիշերային չուն։



Խոմենկոն... բարձրացրեց հրացանը։

— Յա՛ն, տեղավորվիր բարեկամիդ քո հոլիկում, խլահավերը բարձրանում են. լսո՞ւմ ես սուզաբադերի սուլոցները,— հանկարծ բարձրաձայն ասաց Տատոն։

Մտանք հոլիկը։ Տատոն տեղավորվեց մի ուրիշ հոլիկում։ Երբ վերջացրինք բոլոր նախապատրաստական աշխատանքներն ու պառկեցինք մամուռի վրա, Խոմենկոն հարցրեց.

— Օձեր չկա՞ն այստեղ։

— Ոչ, այստեղի բնակիչները օձերի մասին գաղափար անգամ չունեն։

— Իսկ սառցասուզահավեր կա՞ն,— նորից հարցրեց նա։

— Նրանք առաջինն են չվել,— պատասխանեցի ես։ Խոսքս վերջացնելով ես նրան նշան արեցի լռել, բայց նա շարունակեց.

— Մի անգամ Պոլտավայում իմ հարևան Դոմնիկի հետ որսի գնացինք...

— Նիկոլայ Նիկոլայևիչ, որսի ժամանակ խոսել չի կարելի,— ընդհատեցի խոսակցիս և ցույց տվեցի Տառոյի կողմը։

Նա մի պահ լռեց, ապա շարունակեց.

— Ես մի կրակոցով երկու բադ խփեցի, նրանցից մեկը սառցասուզահավ էր։

Խոմենկոն խոսքը չվերջացրեց։ Մեր հոլիկի վրայով սրընթաց թռան երկու ճերմակ սուզաբադ։ Հասան մինչև լճակի կենտրոնն ու ընկան ջրի մեջ։

Խոմենկոն անմիջապես բարձրացրեց հրացանը։ Այն ժամանակ, երբ բադերը լողում էին դեպի մեզ, ես չհասցրի նրան զգուշացնել, որ չկրակի։ Հանկարծ որոտաց երկփողանի հրացանը. Խոմենկոն անմիջապես դուրս թռավ հոլիկից իր կրակոցի արդյունքները տեսնելու համար. տեսավ ու զարմացավ։ Բադերը լողում էին դեպի նա։ Խոմենկոն հոլիկ չմտավ, կանգնած տեղից նորից կրակեց. բադերը սուզվեցին ջրի տակ և էլի դուրս եկան ու սկսեցին լողալ։ Այնուհետև նա կրակեց մի քանի անգամ իրար հետևից, բայց իզուր. թռչուններն անվնաս էին։ Խոմենկոն բարկությունից և զարմանքից չգիտեր, թե ինչ աներ։ Երբ նա արդեն սպառել էր իր փամփուշտների մեծ մասը, մի տեսակ վախ զգաց, ետ քաշվեց ու մտավ հոլիկը։

— Յա՛ն, սա ի՞նչ բան է,— շշնջաց նա այնպիսի ձայնով, որ կարծես թե վախենում էր, որ բադերը լսեն։

— Ոչինչ, սովորական սառցահավեր են,— պատասխանեցի ես։

— Չեմ հասկանում, կախարդանք է սա, թե՞ երազ։



Երկու սուզաբադ...

— Ոչ մեկը և ոչ էլ մյուսը,— լսվեց մեր հետևից Տառոյի չոր ձայնը,— իսկական բադեր են, միայն թե գետնին կանգնել չեն կարողանում և քայլել չգիտեն։

Լուսինը բարձրացել էր տայգայի վրա։ Ծառերի ստվերները կարճանում էին, գունաթափվում ու անհետանում։ Մամուռն ընդունում էր իր սովորական գույնը։ Լճակի վրա փոքրիկ կոհակներ առաջացան։ Սուզաբադերը շուռ եկան ու սկսեցին լողալ հակառակ ուղղությամբ. Նրանք հեռանում էին։ Տառոն նշան արեց, ես կրակեցի. երկուսն էլ ընկան։ Խոմենկոն զարմացած նայում էր մեզ, և անշնչացած բադերին, նա նույնիսկ ստուգեց երկփողանի «իժովկան» և մեծ կասկածամտությամբ նայեց հրացանի նշանացույցին։

— Ես երբեք չէի վրիպել,— ասաց նա,— չէ՞ որ փորձված, հին որսորդ եմ։

— Հին ես, բայց փորձված չես,— պատասխանեցի ես։

— Հավատա, Յա՛ն, մի գիշերվա մեջ երեք գայլ եմ սպանել։

— Գայլերը երևի հիվանդ են եղել,— վրա

*ները Տատոն և վերցրեց սուզարադներից մեկն ու նստեց ընկած ծառի վրա։*

*Խոմենկոն իրեն վիրավորված էր զգում։*

*— Սուզարադները միայն ճերմակ են լինում,— ասաց Տատոն,— նրանց ոտքերը գտնվում են պոչի տակ, թույլ են. դրա համար էլ այդ բադը չի քայլում և ոտքերի վրա չի կարողանում կանգնել։ Ավելի ճիշտ, դրանք ուղղակի լողակներ են։ Փետուրները ձգվում են առջևից դեպի ետ։ Դա հեշտացնում է թռչունների թռիչքը և մարմինը տաք է պահում։ Սուզարադների փետուրները չորս շերտանի են։ Ձկան թեփուկների պես ծածկում են մեկը մյուսին և տարբերվում են մյուս բադերի փետուրներից նրանով, որ ամուր են և երբ որսորդը զիմացից է կրակում նրանց վրա, կոտորակները կպչում են փետուրներին, բայց չեն ծակում։ Այդ բանը «լավ գիտե սուզարադը» և դրա համար էլ միշտ լողում է դեպի որսորդը։ Տեսա՞ր, բարեկամս, երբ սուզարադը մի պահ ետ դարձավ, Ցանը առանց դժվարության մի փամփուշտով երկուսին էլ խփեց։*

*Տատոն մի պահ լռեց, մեկ-մեկ ցույց տվեց բադի փետուրները և ապա շարունակեց.*

*— Որսորդը նա չէ, ով լավ է կրակում, այլ նա, ով լավ է հասկանում։*

*Տատոն երկար խոսելու տրամադիր էր, բայց թռչունների չուն սկսվել էր, և բադերի առաջին երամն անցավ մեր գլուխների վրայով։ Տատոն շտապեց իր հուլիկը, մենք տեղավորվեցինք մեր հուլիկում։*

*— Եթե Տատոյին լսես,— խոսեց Խոմենկոն,— պիտի հետդ սրինգ բերես կամ ջութակ, բադերի համար Շոպենի վալսերը նվագես, իսկ հրացանդ տանը թողնես։*

*— Ոչ,— պատասխանեցի ես,— դու պարզապես նրան չհասկացար։*

*Բադերի երկրորդ երամն իջավ լճակի վրա։ Ես խնդրեցի Խոմենկոյին հրացանը վայր դնել, չկրակել։ Նա մեծ դժվարությամբ արեց այդ բանը։*

*— Թող Տատոն կրակի, իսկ դու նայիր, թե ինչպես է կրակում։*

*Երամի առջևից լողում էին երկու բադաքլար։ Նրանցից մեկի ճերմակ պարանոցին փետուրների բնական դասավորությունից գեղնավուն օղակի պես շրջագիծ էր առաջացել, մյուսի գլուխը կարմիր էր, իսկ պարանոցը ծածկված էր բազմերանգ փետուրներով։ Առաջինի պոչը երկու սև փետուր ուներ, երկրորդի պոչը կարճ էր ու ճերմակ։ Մենք սպասում էինք։*

*Երբ երկրորդ բադը բավականաչափ հեռացավ երամից, Տատոն կրակեց։ Մյուս բադերը օդ բարձրացան, թռան գնացին։ Պոչին սև փետուրներ ունեցող բադաքլարը երամի առաջնորդն էր։ Եթե Տատոն խփեր նրան, երամը կկորցներ իր թռիչքի ուղին։ «Շալավոր» բադը, որ նույնպես բադաքլար էր, ոչ մի դեր չէր խաղում երամի պաշտպանության գործում։ Դրա համար էլ Տատոն ամբողջ երամի մեջ ջոկեց ու խփեց նրան։*

*Խոմենկոն լուռ էր։ Հենց որսի առաջին օրից նա զգաց Տատոյի խստությունը։*

*— Որսորդը բարի, զգայուն և քնքուշ սրտի տեր պետք է լինի...— կրկնեց նա Տատոյի խոսքերը և ավելացրեց,— իսկ ես այդ համարյա թե չգիտեի։*

*Լույսը սկսում էր բացվել։ Բադերի երամները խառը խմբերով թռչում էին դեպի արևելք։ Օդը լի էր թռչունների կանչերով։ Երկնքի լազուրում բարձր, շատ բարձր թռչում էին կռունկների կանոնավոր շարքերը և նրանց ծանր կռնչյունը լսվում էր հեռու, շատ հեռու։ Նրանք թռչում էին տաք երկրներ։*




## «Ի՞ՆՉ ԵՆ ՊԱՏՄՈՒՄ ՔԱՐԵՐԸ»

Իսկ ի՞նչ կարող են պատմել քարերը: Մի՞թե քարը լեզու ունի, որ պատմել կարողանա: Պարզվում է, որ քարն էլ լեզու ունի և մեզ շատ բան կարող է ասել, երբ մենք սովորենք հասկանալ նրա լեզուն:

Լեռներում կամ դաշտերում շրջելիս մեզ հանդիպում են զանազան քարատեսակներ: Ի՞նչ կա որ. սովո-

ռական ծառեր են, կմտածեք դուք և ուշադրություն էլ չեք դարձնի նրանց վրա: Բայց կարող է պատահել, որ ձեր ոտքի տակ ընկած ժայռաբեկորը մի շատ կարևոր հանքանյութ է պարունակում իր մեջ:

Հանքատեսակները ճշտությամբ ճանաչելու և գտնելու համար, հարկավոր է նրանց մասին գոնե որոշ տեղեկություն ունենալ: Այդ տեղեկությունները դուք կգտնեք գեոլոգիական գիտությունների թեկնածու, դոցենտ Թ. Թադևոսյանի «Ի՞նչ են պատմում քարերը» գրքում:

Թ. Թադևոսյանը մեր ռեսպուբլիկայի հայտնի երկրաբաններից է: Մեր ամսագրում դուք արդեն կարդացած կլինեք գետերի, երկրաշարժերի, լեռնային վուշի՝ սելավի և այլ նյութերի մասին նրա գրած հետաքրքրական զրույցները:

«Ի՞նչ են պատմում քարերը» գիրքը կարդալով դուք կիմանաք, թե ինչ մեծ դեր է խաղացել քարը մարդու կյանքում, նրա առաջացման պատմությունը, գաղափար կկազմեք երկաթի, պղնձի, ալյումինի, ոսկու, պլատինի և այլ մետաղներ պարունակող հանքատեսակների մասին:




Իսկ երբ այս բոլորն իմանաք, շատ մեծ օգուտ կարող եք տալ մեր Հայրենիքին: Այո, օրինակ՝ այս գրքում հեղինակը պատմում է ուրալցի տասնչորս տարեկան Պավլիկ Պավլովի մասին: Այդ տղայի միջոցով հայտնաբերվեցին Ուրալի ալմաստի հանքերը: Ահա և մի ուրիշ դեպք. «Մի անգամ աշակերտները դպրոց են բերում մի բուռ կանաչ ու երկար բյուրեղներ, որ նրանք հավաքել էին մոտակա հովտում, խլուրդների բների շուրջն եղած հողաթմբերից: Մի շաբաթից հետո գյուղ եկած գեոլոգը, իրեն ծանոթ դպրոցի դիրեկտորի մոտ անցնելով, դպրոցի թանգարանում նկատում է այդ բյուրեղները և իմանում նրանց պատմությունը:

Շուտով խլուրդների հողաթմբերի վրայով սկսվեցին փորման աշխատանքները և հայտնաբերվեցին կարևոր հանքատեսակներ»:

Բայց ինչպես ասում է հեղինակը, նման երջանիկ դեպքեր քիչ են լինում: Երբ որոշ տեղեկություն ունենաք հանքատեսակների մասին, ավելի ուշադիր կնայեք շրջապատը, ձեր դպրոցի համար կհավաքեք հանքատեսակների ու քարատեսակների հարուստ հավաքածուներ, որոնք ոչ միայն կօգնեն ձեզ ձեռք բերելու անհրաժեշտ գիտելիքներ, այլև կօգնեն մեր երկրաբաններին նորանոր հանքավայրեր հայտնաբերելու համար:

«Ի՞նչ են պատմում քարերը» պետք է լինի պատանի բնախույզի սիրելի գիրքը:

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՀՐԱՇԱԳՈՐԾ ԲՅՈՒՐԵՂՆԵՐ

Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

(Գեոլոգիական գիտությունների թեկնածու)

*Բնության մեջ բազմաթիվ թանկարժեք քարերի շարքում հանքաբաններին հայտնի է մի հանքաքար, որը հին դասագրքերում կոչվում էր «մոխրաձիգ», իսկ այժմ՝ տուրմալին: Երբ այդ բյուրեղը տաքացնում ենք, նրա մի ծայրը վանում է մոխիրը կամ ուրիշ թեթև, մանր մասնիկներ, իսկ մյուս ծայրը՝ ձգում է: Բայց կան տաքությունից էլեկտրականացող և այլ բյուրեղներ:*

*Կվարցի բյուրեղներն ունեն ավելի տարօրինակ հատկություն: Եթե այդ բյուրեղների վրա ճնշում ենք գործ դնում, նրանք էլեկտրականանում են: Այդ կվարցը կոչվում է պիեզոկվարց: Եթե այդպիսի կվարցի թիթեղը ճնշենք, նա երևան կբերի էլեկտրական լիցք: Իսկ եթե այդ թիթեղի վրա բաց թողնենք փոփոխական հոսանք, այն ժամանակ թիթեղը կսկսի ընդարձակվել և սեղմվել, այսինքն կսկսի ճոճվել: Այդ հատկությունը գործնական մեծ նշանակություն ունի տեխնիկայում:*

*Երկու քառակուսի սանտիմետր մակերեսով և մեկ տասնորդական միլիմետր հաստության կվարցի թիթեղները կարգավորում են ռադիոալիքների երկարությունը: Այդ նույն թիթեղներով կարելի է չափել գրամի տասնորդական մասերից մինչև տասնյակ տոննաների հասնող ճնշումը:*

*Այդ թիթեղների օգնությամբ չափում են ճնշումը հզոր շոգեքարշերում, ներքին այրման շարժիչներում, թնդանոթի կրակոցի կամ ռումբը պայթելու ժամանակ և նույնիսկ մեր արյունատար անոթներում:*

*Պիեզոկվարցի թիթեղների օգնությամբ հնարավոր է լինում լսել սավառնակի մոտորի առողջ աշխատանքը:*

*Հավայան կղզիներում պիեզոկվարցի թիթեղները պաշտպանում են շաքարեղեգի ցանքսերը վնասատու կապույտ բզեզից: Հատուկ գործիքները, որոնք աշխատում են այդ թիթեղների օգնությամբ, իսկույն որսում են մոտեցող բզեզների ձայնը և ազդանշանով հաղորդում մարդկանց: Երբ պիեզոկվարցի թիթեղը ճոճվում է փոփոխական էլեկտրական հոսանքի տակ, նրա ճոճումից ծագում են ձայնային ալիքներ, որոնք կոչվում են ուլտրաձայնային ալիքներ: Նրանց ալիքային երկարությունը ոչ թե մետրերով է չափվում, այլ սանտիմետրերով: Այդ ալիքները մեր ականջները չեն լսում: Դրանք անլսելի ձայներ են: Ուլտրաձայնը «լսում է» միայն ռադիոընդունիչը:*

*Ուլտրաձայնային ալիքները խոշոր դեր են խաղում սուզանավերում: Խոշոր նավերի վրա միշտ կան այդպիսի զգուշացնող ապարատներ, որոնք ուլտրաձայնի ալիքների օգնությամբ որոշում են նավի ճանապարհին եղած արգելքները և խուսափում նրանցից:*

*Ուլտրաձայնային ալիքները օգնում են որսալու ականը, խորտակված նավերը։ Օգտագործվում են նաև ձկնորսության ժամանակ։ Նրանցով կարելի է սպանել միջատներին, մկներին, ձկներին, ոչնչացնել բույսերի վնասատուներին։ Պարզվում է, որ ուլտրաձայնի ազդեցությունից ցորենի ծլունակությունը մեծանում է։*

*Ուլտրաձայնով կարելի է ստուգել մետաղների առողջությունը։ Առողջ մետաղից այդ ալիքներն անցնում են, իսկ ճեղքված կամ փչացած տեղերից անդրադառնում։ Բայց կվարցն ուրիշ շատ հրաշալի հատկություններ էլ ունի...*

## ՓՈՔՐԻԿ ՏԵՐԸ

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Գոմի առաջ չալ ճորթեր
Վազգենի ձեռքն են լիզում,
Այսօր իրենց «փոքրիկ տերը»
Տխուր է, երգ չի ասում։
Ծուլացել է, չի սովորել,
Երկուսներ է ստացել,
Վատ է, անչափ, որ այդ մասին
Նախագահն է իմացել։
Պիոներներին ասել է նա.
— Ով ճորթերին լավ նայի,
Սակայն դասի մեջ ծուլանա,
Էլ մոտ չգա ֆերմային։
Դրա համար Վազգենն այսօր
Կանգնել է լուռ ու տրտում
Ճորթերի մոտ, մտամոլոր
Ինքն իրեն է նախատում։
— Ի՜մ ճորթուկներ, — ասում է նա, —
Մեղավորը ես եմ, ես.
Ախր ինչո՞ւ ես ծուլացա,
Որ բաժանեն ինձնից ձեզ։
Գոմի առաջ երկու չալ ճորթ
Վազգենի ձեռքն են լիզում,
Իրենց «փոքրիկ տերը» այսօր
Տխուր է, երգ չի ասում։

## ՏՈՒՏՈՒՆ

*Վ. ՏԱԼՅԱՆ*

Չար մի տղա զարկեց քարով
Փշրեց լապտերն ավտոյի.
Ավտոն փնչաց և ասաց՝ — Օ՜ֆ...
Մնացի մի աչքանի։
Այսպես, ավտոն, մի աչքը կույր,
Վազեց, կանչեց՝ — Տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ...
Ում էլ ասաց՝ — Ինձ մի աչք տուր,
Ոչ ոք չասաց՝ — Առ, Տուտո՛ւ։
Անցնում էի փողոցով ես.
Ավտոն ձայնեց՝ — Տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ...
— Թե ունենամ քո աչքի պես,
Կտամ ես քեզ, լա՛վ Տուտու։
Կանգնեց, լսեց, դողաց Տուտուն,
Եվ թափ առավ ու վազեց.
Էլի կանչեց՝ — Տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ...
Ոչ ոք մի աչք չտվեց։
Բայց թե բոլոր ավտոներն էլ
Որ կանչում են՝ — Տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ...
Ո՞վ կարող է արդյոք ասել,
Ի՞նչ են ուզում և ինչո՞ւ։
Գիշեր-ցերեկ մարդ են տանում,
Քեզ հասցնում ամենուր,
Մութ գիշերը լույս են անում,
Ձայն են տալիս՝ — Ճամփա տո՛ւր...
Գործ են անում և փնտրում են
Այն տղային անդադար,
Դրա համար էլ կանչում են՝
— Տո՛ւ... Ճամփա տո՛ւր, ճանապա՛րհ...

## ՃԱՌԵԽՈՍԸ

*Ա. ՔՈՉԱՐՅԱՆ*

Դասի ժամին չունի հանգիստ
Միշտ խոսում է ու խոսում,
Ուսուցչուհու հայացքից խիստ
Թաքնվել է նա ուզում։
Հասկանում է, պետք է լռել,
Բայց թե ո՞ւմ ես դու ասում,
Զրույցի պարկն է բաց արել,
Ոչինչ-ոչինչ չի լսում։
Իսկ երբ դաս են հարցնում նրան
Լեզուն կապվում բերանում,
Լռում է ճիշտ համրի նման,
Ոչինչ էլ չի իմանում։
Լավ չէ՞ր լինի դասի ժամին՝
Նստեր խելոք ու լսեր,
Իսկ երբ դասը հարցնեին,
Այն ժամանակ նա խոսեր։

# ՈՒՆԵՆՔ ԿՈՒՌ ԲԱՆԱԿ

Խոսք՝ Մ. ԿՈՐՅՈՒՆԻ

Երաժշտությունը՝ Դ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

Tempo di marcia

Չար հողմերի դեմ՝ հավերժ անառիկ
Ունենք լայնարձակ անպարտ Հայրենիք.
Ունենք կուռ բանակ՝ ուժով անսասան,
Լենինյան աստղը ճակատին պայծառ:
 Ջա՛ն, խիզախ բանակ մեր սովետական,
 Մեր խաղաղ կյանքի արթուն պահապան:
Ոչ մի թշնամի ուժովն իր վայրագ
Քեզ չի սասանի, մեր հզոր բանակ,
Մեր ժողովրդի սերը քո սրտում
Հաղթել ես ամեն ճակատամարտում:
 Ջա՛ն, խիզախ բանակ մեր սովետական,
 Մեր խաղաղ կյանքի արթուն պահապան:
Դու մեր մեծ բանակ կուռ ու քաջասիրտ,
Մեր սերը թող տա քեզ կորով ու խինդ,
Հաղթել ենք երեկ, հաղթել ենք այսօր,
Մերն է հաղթության վառը փառավոր:
 Ջա՛ն, խիզախ բանակ մեր սովետական,
 Մեր խաղաղ կյանքի արթուն պահապան:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ԿՐՈՍՎՈՐԴ

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ.— 1. Թռչուն, 3. Տեղ, որով ել ու մուտ են անում մարդիկ, 5. Թանկարժեք իր, զարդարանք, 7. Աշխարհագրական շրջան ՍՍՌ Միությունում, 8. Քաղաք Գերմանիայի արևմտյան մասում, 10. Սովետական ռեսպուբլիկայի մայրաքաղաք, 11. Հացահատիկային բույս, 12. Գետ Ղազախստանում, 14. Կավե մեծ աման, 16. Օր գետի վերին հոսանքը, 18. Նավահանգիստ Սև ծովի ափին, 19. Կատվազգի կենդանի, 21. Երաժշտական տերմին, 23. Լիճ Աֆրիկայում, 25. Նյութ, որով երեսպատում են մետաղյա իրեր, 27. Ասիական ժողովուրդներից մեկի ներկայացուցիչ, 29. Իներտ գազ, 30. Սպորտի ձև, 31. Աշխարհամաս, 32. Դեմքի մաս, 33. Մարզային կենտրոն Սովետական Միության եվրոպական մասում։

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.—1. Տարվա եղանակ, 2. Վոլգայի աջ վտակ, 3. Նավահանգիստ Չինաստանում, 4. Փողի միավոր, 5. Ձայն արձակող առարկա, 6. Ասիական պետության մայրաքաղաք, 7. Գազ, 9. Նավահանգիստ Ֆրանսիայում, 13. Գետ Ֆրանսիայում, 14. Գյուղատնտեսական աշխատանքների վայր, 15. Վիսլայի վտակ, 16. Կապ (քերականական), 17. Մերձարևադարձային պտուղ, 20. Լիճ Կովկասում, 22. Երևանի արվարձան, 23. Բամբակահավաք, 24. Հայկական ժողովրդական էպոսի հերոս, 25. Հրաբուխ Իտալիայում, 26. Գետ ՍՍՌՄ-ում, 27. Քիմիական էլեմենտ, 28. Լերմոնտովի «Մեր ժամանակի հերոսը» վեպի հերոսներից։

Կազմեց՝ Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

## ՇԱԽՄԱՏ

### ԱՌԱՋԻՆ ԷՏՅՈՒԴ

ՍՈՒԽԵՏԻՆ

ԴԱՍՊԱՐՅԱՆ

Սկսում են սպիտակները.

Առաջին հայացքից թվում է, թե սպիտակները կարող են հաղթել տարբեր ճանապարհներով, բայց պարզվում է, որ հաղթանակի կարելի է հասնել միայն մեկ ձևով:

80. d6—d7 Ձd4—c6. չի փրկում և 80... Ձe6

81. Ա : h3 և երբ 81... Ա : b4, ապա 82. c6 տանում է:

81. Ձe4—d6+! Աb5 : b4 82. Ձd6—b7! Աb4—b5.

82. ...Աc4 չի կարելի՝ 83. Ձa5+! պատճառով:

83. Աg3 : h3 Աb5—a6 84. Ձb7—d8 Աa6—a7

85. Ձd6—f7??... Այս թույլ քայլով սպիտակները կորցնում են հաղթանակի հնարավորությունը, որին հասել էին այսպես.

85. Աh4! Աb8 86. Ձb5! Աb7

87. Աg5 Ձd8 88. Աg5 Աc6

89. Աe7, և սպիտակները հաղթում են:

85. ...Աa7—b7 86. Ձf7—e5...

երբ 86. d8թ, ապա Ձ : d8 87. Ձ : d8+Աc7

88. Ձe6+Աc6 89. Աg4 Աd5—ոչ ոքի:

86. ...Ձc6—d8 87. Ձe5 : g6 Աb7—c6

88. Ձd6—f8 ոչ ոքի:

**ԵՐԿՐՈՐԴ ԷՏՅՈՒԴ**
ԼԵԲԵԴԵՎ




ԱՆՏՈՇԻՆ

Սկսում են սպիտակները։

Սպիտակները (Անտոշին), կորցնում են երկու զինվոր և հնարավորություն ստանում ուժեղ հարձակման։ Անտոշինը ֆինալում խաղում է ուժեղ և ակտիվորեն։

20. Նa1—e1!... Որակը զոհելու սպառնալիքով 21. Ն:e6! fe 22. Փh6 ևս չմղվող գրոհով։

20. ...Փe6—c4 21. Ձd6:c4 Նc2:c4

C4-ի նավակը հիմա գտնվում է անհաջող դիրքում, որը սպիտակներին վճռական հարված հասցնելու հնարավորություն է տալիս։

22. Փf4—h6 Աg8—h8

22. ...f5 չի օգնում՝ 23. թb3 թd5

24. Նc1 պատճառով և սպիտակները հաղթում են։

23. Նe1—e7! f7—f5 24. Նf1—e1 Նa8—b8

25. թf3—h7!

Սևերը հանձնվում են նկատի ունենալով անխուսափելի պարտությունը։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

չորրորդ էջը՝ Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ



*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 08862։ Պատվեր 35։ Տիրաժ 5000։ Տպագրական 2½ մամուլ։ Ստորագրված է տպագրության 2/II 1955 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների, պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*





# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



### Ականավոր կոմպոզիտորը

1939 թվականին, Հայկական արվեստի տասնօրյակի օրերին, որպես ազգային երաժշտության լավագույն նմուշ Մոսկվայում ներկայացվեց նաև «Անուշ» օպերան։ Այդ օպերան բարձր գնահատականի արժանացավ մայրաքաղաքի հասարակայնության կողմից։ Սովետական կառավարությունը օպերայի հեղինակ, կոմպոզիտոր Արմեն Տիգրանյանին պարգևատրեց Լենինի շքանշանով։



Տիգրանյանը ծնվել է 1879 թվականին Լենինականում (այն ժամանակ Ալեքսանդրապոլ)։ Նրա ծննդավայրը դեռ վաղ ժամանակներից հայտնի է եղել ժողովրդական և աշուղական երաժշտությամբ։ Դա շատ բանով օգնեց Տիգրանյանի երաժշտական ընդունակությունների զարգացմանը։

Իր մասնագիտական կրթությունը Տիգրանյանը ստացել է Թիֆլիսի երաժշտական ուսումնարանում, իսկ հետո սովորել է հայտնի կոմպոզիտոր Մակար Եկմալյանի մոտ։

Շատ հաճախ երիտասարդ Տիգրանյանին կարելի էր տեսնել Թիֆլիսի օպերայի և բալետի թատրոնում։ Նա ամենից շատ սիրում էր Չայկովսկու և Վերդիի օպերաները, որոնք բարերար ազդեցություն թողեցին նրա վրա և նա ձեռնամուխ եղավ հայկական օպերայի ստեղծմանը։ 1908 թվականին, երբ երիտասարդ ստեղծագործողը առաջին անգամ ծանոթացավ Հովհաննես Թումանյանի «Անուշ» պոեմային, հաստատ կերպով որոշեց և սկսեց գրել նույնանուն օպերան։ Օպերան առաջին անգամ ցուցադրվեց 1912 թվականին Ալեքսանդրապոլում։ «Անուշ» օպերայով, որը հետագայում մի քանի անգամ մշակել ու լրացրել է կոմպոզիտորը, հիմք դրվեց հայկական ազգային օպերային արվեստի զարգացմանը։

Տիգրանյանը գրել է նաև մի շարք երգեր ու ռոմանսներ, դաշնամուրային պիեսներ, խմբերգեր։ Դրանցից են, օրինակ՝ Սովետական Բանակի 15-ամյակին նվիրված «Կանտատան», «26 կոմիսարների հիշատակին» և այլ գործեր։ Ա. Տիգրանյանն է գրել «Լեյլի Մեջնունի» և բազմաթիվ այլ դրամատիկական ներկայացումների երաժշտությունները։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Տիգրանյանը սկսեց գրել իր երկրորդ, հերոսական օպերան՝ «Դավիթ բեկը», որը դարձավ կոմպոզիտորի վերջին, մեծ ստեղծագործությունը։

Արմեն Տիգրանյանը ակտիվ մասնակցություն էր ունենում նաև հասարակական կյանքին։ Մեծ է նրա աշխատանքը երիտասարդության երաժշտական դաստիարակության գործում։

Արմեն Տիգրանյանը վախճանվեց 1950 թվականի փետրվարի 10-ին։

### Բուդապեշտ

Դանուբ գետի աջ ափից բարձրանում են գորշագույն լեռները։ Այդ լեռների ստորոտում, մեր թվարկության երկրորդ դարում, հիմք դրվեց Բուդա բնակավայրին։ Գետի ձախակողմյան մասը հարթավայր է, որտեղ գտնվում էր Պեշտը։ Դանուբի աջ և ձախ ափերին գտնվող այդ երկու բնակավայրերը՝ Բուդան և Պեշտը զարգացել են որպես առանձին քաղաքներ։ 1872 թվականին դրանք միացվեցին և ստեղծվեց Բուդապեշտը, որը և հռչակվեց որպես Հունգարիայի մայրաքաղաք։ Անցյալ դարի վերջերից Բուդապեշտում արագ թափով սկսեց զարգանալ արդյունաբերությունը։ Դրա հետ միաժամանակ առաջացավ բանվոր դասակարգը։ Բուդապեշտը դարձավ բանվորական շարժման կենտրոն։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ, 1944 թվականի մարտ ամսին, Բուդապեշտը գրավեցին ֆաշիստական Գերմանիայի զորքերը։ Հիտլերականները գազանաբար էին վարվում բնակչության հետ։ Նրանք անխնա ոչնչացնում էին հունգար ժողովրդի ստեղծած կուլտուրան, գրականությունը, արվեստը, ճարտարապետական հոյակապ կոթողները։ Բայց 1945 թվականին սովետական զորքերը ազատագրեցին Բուդապեշտ քաղաքը, ապա նաև ամբողջ երկիրը։

Շուտով Հունգարիայում հռչակվեց ժողովրդական ռեսպուբլիկա։ Ազատագրումից հետո սկսվեց հունգար ժողովրդի երջանիկ կյանքը։ Նոր Հունգարիայում Բուդապեշտն սկսեց զարգանալ վիթխարի թափով և այժմ դարձել է տնտեսական ու կուլտուրական կյանքի կենտրոն։



Բուդապեշտը Եվրոպայի գեղեցիկ քաղաքներից մեկն է և հայտնի է իր պատմական հուշարձաններով ու գեղեցիկ կառուցումներով։

Փետրվարի տասներեքին լրանում է Բուդապեշտի ազատագրման 10 տարին։

